ՊԻՈՆԵՐ
ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
№ 4
ԱՊՐԻԼ
1957 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 29-ՐԴ ՏԱՐԻ



Նկ. Դ. ԽԱՅԿԻՆԻ.

*Վոլոդյան շատ էր սիրում հոր հետ շախմատ խաղալ։*

1895 թվականի դեկտեմբերին Վ. Ի. Լենինը ձերբակալվեց և ավելի քան 14 ամիս բանտում մնալուց հետո աքսորվեց Արևելյան Սիբիր, Շուշենսկոյե գյուղը։

# Թանկագին

Վլադիմիր Իլյիչ Լենինի նամակները իր մորը՝ Մարիա Ալեքսանդրովնային*։

(27) 15/XI (18) 98
(գյուղ Շուշենսկոյե)

Ինչպե՞ս եք ձմեռում Պոդոլսկում, թանկագին մայրիկ։ Իհարկե, ձեզ համար ուրախ չէ այս ձմեռը, Մարկը ստիպված եղավ առանձին ապրել, Միտյան գամված է Պոդոլսկին։ Նա ոչինչ չի պատասխանում իմ այն հարցերին, թե ինչպես պիտի կրի զինվորական պարտադիր ծառայությունը՝ որպես շարայի՞ն, թե՞ բուժակ։ Որևէ տեղեկություն (լուր) կա՞ նրա գործի մասին, մոտավորապես ե՞րբ է վերջանալու և ինչո՞վ, թե՞ ոչ մի լուր չունեք։ Ինչպե՞ս է Մարկի առողջությունը։ Մոսկվայում մենակ չի՞ տխրում արդյոք, թե՞ ծանրաբեռնված է աշխատանքով ու երեկոներն էլ՝ դասախոսություններով (դասախոսություններ կարդո՞ւմ է, թե ոչ)։

Մեզ մոտ ոչ մի նորություն չկա։ Փոխվել են միայն զվարճությունները, ձմռան գալու առթիվ որսորդության փոխարեն սկսել եմ զբաղվել չմուշկներով, մտաբերեցի հին օրերը և, պարզվեց, որ սահելը չեմ մոռացել, թեև արդեն տաս տարի է չեմ սղղացել։ Նադյան էլ է ուզում սովորել, չգիտեմ, կհաջողվի՞ արդյոք։

Ողջույն մերոնց բոլորին։
Պինդ համբուրում եմ քեզ։
Քո Վ. Ու.

(3/IX) 22 VIII (18) 99
(գյուղ Շուշենսկոյե)

Թանկագին մայրիկ, երեք օր է, ինչ ստացել եմ քո, Անյուտինոյի և Մանինոյի նամակները, Անյուտայի ուղարկած գիրքը («Գիտական տեսություն»), իսկ Մանյաշայից՝ կտրված թերթիկներ։ Merci այդ ամենի համար։

* Նամակները տպագրվում են կրճատ, ըստ Վ. Ի. Լենինի «Նամակ հարազատներին» գրքի. (պետական հրատարակչություն, 1934 թ.)։

Զափազանց ուրախացա, իմանալով, որ դու ապաքինվել և նորից ոտքի ես կանգնել։ Ինչի՞ց էր այդ մալարիան մոլեգնում Պոդոլսկում, տեղը ճահճայի՞ն է։ Արդյո՞ք հիմա դու քեզ կատարելապես լավ ես զգում։ Այստեղ աշունը կարծես շատ լավ է սկսվում, չոր է ու տաք։ Ինչպե՞ս է ձեզ մոտ։

...Ապրում ենք առաջվա նման։ Հիմա լավ եղանակ է, և ես ու Նադյան շատ ենք զբոսնում։ Մենք բոլորս էլ առողջ ենք։

Ամուր գրկում եմ քեզ, թանկագինս, և ցանկանում եմ առողջ լինես։

Քո Վ. Ու.

(15) 3 I (18) 99
(գյուղ Շուշենսկոյե)

Երեկ ես ու Նադյան, թանկագին մայրիկ, վերադարձանք Մինուսից, որտեղ մի շաբաթ շատ ուրախ անցկացրինք Գլեբի ու Բազիլիի մոտ և Նոր տարին դիմավորեցինք ընկերների շրջանում։ Նոր տարվա դիմավորման բաժակաճառերը շատ-շատ էին, և հատկապես ջերմորեն ընդունվեց ընկերներից մեկի բաժակաճառը. «Էլվիրա Էրնեստովնայի և բացակայող մայրերի կենացը»։

... Հուսով եմ, որ Անյուտան ստացել է իմ նամակը։ Միաժամանակ նամակ եմ ուղարկել Միտյային, խնդրելով՝ ինձ համար զենք գնել։ Ֆինանսական բնույթի դժվարությունների չի՞ հանդիպի արդյոք։ Իմ հոնորարի հետ ինչ-որ բան է պատահել, իսկ ես անընդհատ գրքեր եմ վերցնում Կալմիկովայի պահեստից, այնպես, որ նույնիսկ ամաչում եմ։

Պինդ համբուրում եմ քեզ և ողջույններ հղում բոլորին։

Քո. Վ. Ու.

(19/VIII 1 IX (19) 01
(Մյունխեն)

Թանկագին մայրիկ, օրերս ստացա Նադյային գրած քո նամակը՝ Մանյաշայի հավելված նամակի հետ միասին։ Սաստիկ վշտացա, իմանալով, որ մեր գործերն այդպես տխուր են։ Սիրելիս, ես հիմա չգի-







Լենինը երեք տարի անցկացրեց աքսորավայրում՝ Շուշենսկոյե գյուղում։ Աքսորից հետո Ռուսաստանում մնալը վտանգավոր էր, և Վլադիմիր Իլյիչը մեկնում է արտասահման, որտեղ մնաց (ոչ մեծ ընդմիջումներով) մինչև 1917 թվականի ապրիլը։

# մայրիկ

տեմ, թե ինչ խորհուրդ կարելի է տալ։ Խնդրում եմ չափից ավելի չհուզվես, հավանական է դատախազության կողմից մերոնց նկատմամբ ունեցած կովախնդրությունները իրենցից ներկայացնում են «գործը» ոչնչից ուռճացնելու վերջին փորձերը և, այդ փորձերի անհաջողությունից հետո, ստիպված կլինեն բաց թողնել նրանց։ Կարող է պատահել, որ անօգուտ չանցնի, եթե ինքդ մեկնես Պետերբուրգ, իհարկե, եթե առողջությունդ թույլ է տալիս, և այնտեղ բողոքես այնպիսի չտեսնված բանի դեմ, ինչպիսին է վեց ամսվա ընթացքում հարցաքննություն չկատարելը...

Երբ ազատ ժամանակ կունենաս, թանկագինս, գրիր ինձ, խնդրում եմ, թե ինչպես ես զգում քեզ, արդյոք լրիվ առողջ ես, ինչպե՞ս ես մտածում անցկացնելու աշունը...

Ամուր, ամուր գրկում եմ քեզ, թանկագինս, և ցանկանում եմ լինես առողջ ու առույգ։ Հիշո՞ւմ ես, երբ ինձ բռնել էին, դու գործը էլի շատ ավելի լուրջ ու վտանգավոր էիր պատկերացնում. բայց չէ՞ որ Մանյաշայի և Մարկի գործը ոչ մի կերպ չի կարելի համեմատել իմ գործի հետ...

Կրկին անգամ համբուրում եմ քեզ։

Քո Վ. Ու.

## 8 V (25/IV 19) 02
## (Լոնդոն)

Թանկագին մայրիկ։ Օրերս Մանյաշայից ողջույնի բացիկ ստացա, Վոլգայի տեսարանով։ Շատ շնորհակալ եմ նրանից։ Չգիտեմ, վերջին ժամանակներս դուք կանոնավոր կերպով ստանո՞ւմ եք իմ բոլոր նամակները։ Այդ բացիկից բացի, կարծես թե երկար ժամանակ է, որ ես ձեզանից ոչինչ չեմ ստացել։

...Հուսով եմ շուտով տեսնվել քեզ հետ[1], թանկագինս։ Միայն, թե ճամփորդությունը քեզ շատ չհոգնեցնի։ Անպայման հարկավոր է ընտրել ցերեկային գնացքները և գիշերելու համար իջևանել միայն հյուրանոցներում։ Արտասահմանում հյուրանոցները թանկ չեն և կարելի է հիանալի գիշերել։ Առանց հանգստանալու, այստեղի գնացքների արագության և քիչ կանգառների պայմաններում մի քանի օր ուղևորվելը բոլորովին անհնար է։ Անհամբերությամբ կսպասեմ մեկնելուդ լուրին։ Գուցե Ռուսաստանից կամ արտասահմանից հեռագի՞ր կտաս, երբ նստես անմիջապես այստեղ եկող գնացքը։ Դա շատ ավելի հարմար կլինի։

...Ամուր գրկում եմ քեզ, թանկագինս, և շատ ողջույններ հղում մերոնց բոլորին։

Քո Վ. Ու.

## 19 (6) I (19) 11
## (Փարիզ)

Թանկագին մայրիկ։ Հենց նոր ստացա քո նամակը։ Նադյան շատ շնորհակալ է և ողջույն է հղում քեզ։ Ինչ վերաբերում է ինձ, ապա ես շտապում եմ ուղղել այն թյուրիմացությունը, որը, ինչպես երևում է, առաջացել է անկախ իմ կամքից։ Խնդրում եմ ինձ փող չուղարկես։ Այժմ ես կարիք չունեմ։ Վերջին նամակներից մեկում ես գրել էի, որ չի հաջողվում տպագրել ոչ գիրքը, ոչ հոդվածը։ Բայց վերջին նամակում ես արդեն գրել եմ, որ ասում են, թե հոդվածը ընդունում են։ Գրքի մասին գրեցի Գորկուն և հույս ունեմ, որ դրական պատասխան կստանամ։ Համենայնդեպս, հիմա իմ դրությունը վատ չէ, կարիք չունեմ։ Եվ ես շատ եմ խնդրում քեզ, թանկագինս, ոչինչ չուղարկես ինձ և թոշակից էլ չտնտեսես։ Եթե նեղության մեջ ընկնեմ, ես անկեղծորեն կգրեմ, բայց հիմա ես կարիքի մեջ չեմ։ Հրատարակիչ գտնելը հեշտ չէ, սակայն ես նորից ու նորից կփնտրեմ. բացի այդ, ես շարունակում եմ ստանալ այն «ռոճիկը»*, որի մասին քեզ ասացի Ստոկհոլմում։ Դրա համար էլ խնդրում եմ չանհանգստանաս։

...Ամուր գրկում եմ քեզ, թանկագինս, և ցանկանում եմ առողջություն։

Քո Վ. Ու.



---

[1] 1902 թվականի ամռանը Վլադիմիր Իլյիչին տեսնելու համար Մարիա Ալեքսանդրովնան մեկնեց արտասահման և նրա հետ երկու շաբաթ ապրեց Ֆրանսիայի հյուսիսային Loguivy գյուղում։

* Վ. Ի. Լենինը պարտիական «ռոճիկ» էր ստանում այն ժամանակ, երբ նա ապրուստի ուրիշ ոչ մի աղբյուր չուներ։







# ԼԵՆԻՆԻ ՇՔԱՆՇԱՆԸ

Ռ. ԱԲԱԼՅԱՆ

Մինչև այսօր էլ անհայտ է այն հերոսի անունը, որը կործանումից փրկեց հազարավոր մարդկանց կամքով ու աշխատանքով կառուցված պատնեշը:

Վաղ գարնան մի օր, գիշերը տեղատարափ անձրև էր գալիս: Անձրևն սկսվել էր վաղ առավոտից, տեղացել ամբողջ օրը, իսկ գիշերն է՛լ ավելի սաստկացավ: Որքա՜ն հաճելի է գարնան առաջին անձրևը, բայց միաժամանակ որքան վտանգավոր՝ այնպիսի մի շինարարության համար, ինչպիսին Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանն էր: Եվ ահա այդ օրը, մթնշաղին, Վոլգայի վրա լսվեց հզոր մի որոտ, գետի սառույցը ճեղքվեց, տակից դուրս խուժեցին կապուտակ ջրերն ու կատաղի թափով հեղեղեցին ափերը: Իսկ գիշերը սառույցն արդեն հոսում էր գետի ամբողջ հունով, քերում ափերը, ծեծում ամբարտակները, սպառնում քար ու քանդ անել ամեն ինչ: Շինարարական տեղամասի բանվորներն անհանգստացած էին. չլինի՞, թե ամբարտակը խորտակվի: դա սոսկալի աղետ կլիներ ամբողջ շինարարության համար: Եվ պահակակետերն ուժեղացվեցին նոր մարդկանցով: Հանկարծ խավարի մեջ տարածվեց ինչ-որ մեկի օգնության կանչը ու մեկեն մարեց: Լսվում էր միայն իրար գարկվող սառցաբեկորների դղրդը: Տեղամասի բանվորները գլխապտույտ արագությամբ նետվեցին դեպի օգնություն կանչող ձայնը:

Այժմ ո՛չ ոք չգիտի այն պատանու անունը, որն այդ մռայլ խավարի մեջ օգնության կանչեց մարդկանց: Նրան տեսնողները հետագայում պատմում էին, որ ջուրը ճեղքել էր տախտակյա պատնեշի մի մասը և արդեն խուժում էր աշխատանքային հրապարակ՝ սպառնալով ավերել կիսակառույց շենքերը, խորտակել մեքենաներն ու սարքավորումները: Իսկ այդ պահին պատանի մի բանվոր, մեջքը հենած պատնեշին ու ոտքերը սեղմած գետնին, իր մարմնով փակել էր ճեղքվածքը: Լարվածությունից նրա դեմքն ամբողջովին կերպարանափոխվել էր. նա ոտքից գլուխ թաց էր ու ցեխակոլոլ և, զգացվում էր, որ երկար չի դիմանա խորտակվող պատնեշի ահավոր ծանրությանը: Մի րոպե ևս, և պատանին կճզմվեր փլվածքի տակ, բայց չնայած դրան, նա շարունակում էր դիմադրել ջրի ճնշմանը: Այդ պահին ո՛չ ոք չհետաքրքրվեց նրանով, բոլորը մտածում էին միայն ճեղքվածքը փակելու մասին: Սակայն, երբ լույսը բացվեց, երբ վտանգն անցավ, ու է. . մարդիկ մտածեցին գտնել պատնեշը փրկող պատանուն և շնորհակալություն հայտնել նրան, վերջինս արդեն չկար: Շատ որոնեցին նրան, տեղամասի պետը նույնիսկ հայտարարություն գրեց, որպեսզի գիշերվա հերոսը հայտնի իր անունը, բայց ոչ մի պատասխան չստացվեց:

Դուք կարծում եք, թե այդ պատանին պատահական մա՞րդ էր. ո՛չ, իհարկե: Նա այդ նույն տեղամասի բանվորներից էր, գուցե այդ նույն պատնեշը կառուցողներից մեկը: Նա իր անունը պարզապես չհայտնեց այն պատճառով, որ այդ գործը համարում էր իր պարտականությունը: Եվ այդպես էլ անհայտ մնաց: Բայց մենք այնուամենայնիվ գիտենք, թե ով էր նա՝ անշուշտ մեկը կոմերիտմիության այն հազարավոր պատվիրակներից, որոնք Կոմունիստական պարտիայի կոչով մեկնել են մեր երկրի նորակառույցները և ազնվորեն ու հերոսաբար աշխատում են այնտեղ: Հիմա Կույբիշևում, Ստալինգրադում, Դոնբասի ածխահորերում, Սիբիրյան երկրամասի նորակառույցներում, խամ ու խոպան հողերի յուրացման շրջաններում քանի՜-քանի՜ այդպիսի անանուն պատանիներ ու

աղջիկներ կան, որոնք ամեն օր, ամեն ժամ հերոսական պայքար են մղում տարերքի դեմ, աշխատում, կառուցում ու ստեղծում՝ առանց ցուցամոլության և պարծանքի, սակայն հիանալի գիտենալով, որ աշխատում են մեր Հայրենիքի համար, ժողովրդի համար, քե՛զ համար, մեր պատանի ընթերցող։

* * *

Շատ տարիներ առաջ Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկին հանդիպելով ղազախ գրող Սաբիթ Մուկանովին, ասել է.

— Դուք, եղբայրներ, նստած եք ոսկու սնդուկում, տեսնում եմ, որ դուք քիչ եք վերցրել նրանից, պետք է ավելի շատ վերցնել...

Եվ, իսկապես, չէ՞ որ Ղազախստանը մեր օրերում արդեն դարձել է ոսկու սնդուկ՝ անսպառ հարստությունների աղբյուր։

Դարեր շարունակ Ղազախստանի անծայրածիր տափաստանները ամայի են եղել։ Այնտեղ գարնան ամիսներին բարձրացել է սիզախոտը, ամռան տապին չորացել, իսկ աշնանն ու ձմռանը ոռնացել է բուքը, սարսռացել քամին։

Սակայն 1954 թվականին Սովետական Միության Կոմունիստական պարտիան որոշեց սանձել բնության տարերքը, նվաճել տափաստանները, բացել ոսկու սնդուկի կափարիչները։

1954 թվական։ Փետրվարի 2... Մոսկվայում, Կրեմլի մեծ պալատի կամարների տակ հավաքվել էին հազարավոր պատանիներ ու աղջիկներ։ Այդ Կոմունիստական պարտիան էր նրանց կանչել՝ ասելու իր խոսքը, մեր երկրի պատանիներին կոչելու նոր սխրանքների ու հերոսական գործերի։ Եվ երբ Լենինյան Կոմունիստական Երիտասարդության Միության պատվիրակներն իմացան, որ պարտիան իրենց մարտական առաջադրանք է տալիս՝ նվաճել խոպանները, միահամուռ ասացին.

— Պարտիայի առաջադրանքը կկատարվի։

Իսկ այդ նույն ժամին Մոսկվայի Կազանյան կայարանի կառամատույցում արդեն փնչում էր շոգեքարշը, որը դեպի Ղազախստանի տափաստանները էր տանելու հազարավոր պատանիների ու աղջիկների։

Այսպես սկսվեց գրոհը տափաստանի վրա։ Ղազախստանի խամ ու խոպան հողերում փետրվարին ու մարտին մոլեգնում էր բուքը։ Ձյուն էր տեղում, ու սարսափելի ցուրտ էր։ Այդ անմարդաբնակ տափաստաններում չկային ո՛չ գյուղեր, ոչ բնակավայրական ավաններ, ոչ էլ շենքեր։ Ամեն ինչ պետք է ստեղծեին իրենք, կոմերիտականները։ Սակայն այս մեծ դժվարություններից կոմերիտմիության պատվիրակները երբեք չհուսալքվեցին։ Նրանք տափաստանի ձյուների մեջ խփեցին իրենց առաջին վրանները և սկսեցին բնակարաններ կառուցել։

Այսպես անցան լարված ու հերոսական աշխատանքի 60 օրեր։ Եվ ահա տափաստանի վրա բացվեց ապրիլյան ջերմ արևը։ Ձյունը հալվեց ու ծծվեց հողի մեջ։ Ձյան տակից դուրս եկավ առաջին ձնծաղիկը, երկնակամարում ճախրեցին առաջին ծիծառները, ու նրանց առաջին ճռվողյունի հետ միասին տափաստանում հռնդացին հզոր տրակտորները։ Առաջին ակոսները բացվեցին, խամ հողի մեջ ցանվեց առաջին ոսկեհատիկ ցորենը. և ամբողջ ճակատով սկսվեց գրոհը տափաստանի վրա։

* * *

Դմիտրի Սուշևսկին Ղազախստան մեկնեց իր հինգ ընկերների հետ միասին։ Նախկինում էլ նա տրակտորիստ էր եղել, աշխատել էր Ռուսաստանի Սևահողային մարզի շատ մեքենատրակտորային կայաններում ու կոլտնտեսություններում։ Շատ դժվարություններ էր հաղթահարել նա բարձր բերքի համար մղվող պայքարի դժվար ճանապարհին։ Անհաջողություններ էլ էին եղել նրա կյանքում, բայց նա այդ ամենը հաղթահարել էր։ Իսկ այն, ինչ նա տեսավ Ղազախստանի Օրջոնիկիձեի շրջանի Մոլոտովի անվան նորաստեղծ սովխոզի հողերը վարելիս, անսպասելի էր։ Հենց առաջին





օրը, երբ նա նստեց տրակտորի ղեկի մոտ, հասկացավ, որ տափաստանում աշխատելը շատ ավելի դժվար է։ Հողը դեռևս լավ չէր չորացել, բայց և ամուր էր ինչպես երկաթը։ Չէ՞ որ տափաստանը դարեր շարունակ չէր մշակվել։ Բայց Դմիտրին ամենևին չհուսահատվեց. նա է՛լ ավելի ամուր բռնեց իր տրակտորի ղեկը և սկսեց վարը։ Աշխատանքային օրվա վերջում, երեկոյան, տրակտորիստների նրա ղեկավարած օղակում փոքրիկ խորհրդակցություն տեղի ունեցավ։

— Տղաներ, — ասաց Դմիտրին, — ճիշտ է, այսօր մենք կատարեցինք առաջադրանքը, բայց դա մեզ բավարարել չի կարող։ Տափաստանի գարունը կարճատև է, ընդամենը մի քանի օր, եթե մենք չկարողանանք ժամկետից շուտ ավարտել մեզ տրված առաջադրանքը, ապա մեծ վնաս կհասցնենք սովխոզին։ Ուրեմն, եկեք աշխատենք երկու հերթափոխով։

Բոլորը համաձայնեցին. որոշվեց ագրեգատում անցնել հերթափոխության՝ հոգնած ընկերոջը ուղարկել հանգստանալու, մեկ տրակտորիստով աշխատել, և այսպես անընդհատ։ 15 օրից հետո Դմիտրիի օղակը ոչ միայն կատարեց, այլև 300 հեկտարով գերակատարեց առաջադրանքը։

Հանգիստ չանցան նաև ամռան տաք օրերը։ Տրակտորները նորոգելուց և կոմբայնները հնձի համար նախապատրաստելուց հետո, Դմիտրին և նրա ընկերները չցանկացան ձեռքերը ծալած նստել։ Նրանք խնդրեցին սովխոզի դիրեկցիային՝ իրենց աշխատանքի վերցնել շինարարական բրիգադում և դարձան ակամա շինարարներ։

Օգոստոսի վերջերին ամբողջ տափաստանը ոսկե թիկնոց հագավ։ Զարմանալի առատ բերք էր հասունացել երբեմնի խոպաններում։ Ցորենը բարձրացել էր մարդու հասակից էլ բարձր ու մեղմորեն ծփում էր տափաստանի մեղմ քամու շնչի տակ։ Ահա, հենց այդ օրերին էլ Դմիտրին և իր ընկերները շինարարի մուրճը ցած դրին ու կրկին նստեցին տրակտորի ղեկի մոտ։ Հենց առաջին օրը Դմիտրին առաջադրանքը կատարեց 200 տոկոսով։ Բայց հաջողությունը չհանգստացրեց երիտասարդ կոմբայնավարին։ Նա և նրա ընկերները օր-օրի բարձրացնում էին աշխատանքի արտադրողականությունը։ Շուտով Դմիտրին սկսեց հնձել 45 հեկտար տարածություն։ 5 օրվա ընթացքում նրա ղեկավարած ագրեգատը հնձեց 236 հեկտարի բերք։

— Քիչ է, շատ քիչ է, — դժգոհեց Դմիտրին, — պետք է հասցնել 60 հեկտարի։

Տղաները զարմացան։

— Իսկ մի՞թե դա հնարավոր է, — ասաց նրանցից մեկը։

— Ամեն ինչ հնարավոր է, — ասաց Դմիտրին, — պետք է միայն ցանկանալ, իսկ ցանկության դեպքում կարելի է հաղթահարել ամեն ինչ։

Իսկ երեք օր հետո ռադիոգիրը կայծակի արագությամբ տարածվեց ամբողջ սովխոզում։

«Դմիտրի Սուշևսկու ագրեգատը մեկ հերթափոխում հնձել է 65 հեկտար»։

Դա ռեկորդային ցուցանիշ էր ամբողջ Կուստանայի մարզում։

* * *

Խամ ու խոպան հողերի յուրացման շրջաններում աշխատելու գնացին նաև հազարավոր հայ երիտասարդներ։ Իրենց պատվիրակներին Ղազախստան էին ուղարկել Երևանի, Լենինականի, Ղափանի, Սևանի, Հոկտեմբերյանի կոմերիտական կազմակերպությունները։ Մեկնելով Ղազախստան, հայ երիտասարդ հայրենասերները երդվեցին բարձր պահել մեր ռեսպուբլիկայի անունը, արդարացնել իրենց ընկերների վստահությունը։

Մինչ Ղազախստան մեկնելը Գրիշա Մամիկոնյանն ու Ժորա Սարգսյանն իրար չէին էլ ճանաչում։ Նրանք ծանոթացան ճանապարհին՝ գնացքի մեջ, իսկ մտերիմ ընկերներ դարձան Կուստանայի մարզի, Օրջոնիկիձեի շրջանի, Բատալինսկի սովխոզում։

*Այդ սովխոզը նոր էր կազմակերպվել։ Դեռևս չէին ստացվել նոր տրակտորներ, կոմբայններ ու գյուղատնտեսական այլ մեքենաներ։ Սովխոզի դիրեկցիան ստիպված էր վերանորոգել մի հին կոմբայն, որն այդտեղ էր բերվել ինչ-որ տեղից և արդեն մի քանի տարի է, ինչ չէր աշխատում խափանված լինելու պատճառով։ Գրիշան ու Ժորան պարտավորվեցին վերանորոգել այդ կոմբայնը և եռանդով գործի անցան։ Նրանք մանրազնին ուսումնասիրելուց հետո, որոշեցին քանդել ամբողջ կոմբայնը և հավաքել նորից։*

*Այդպես էլ արեցին։ Երկու ընկերներին մեծ օգնություն ցույց տվեց սովխոզի մեխանիկական արհեստանոցը։ Կորած կամ բոլորովին փչացած մասերը պատրաստվում էին հենց այդ արհեստանոցում։ Անցավ մի քանի օր. ՄՏ կայանի բակում կանգնեց բոլորովին նոր ու գեղեցիկ կոմբայն։ Հասավ փորձարկման ժամը։ Կոմբայնի շուրջը հավաքվել էին հարյուրավոր բանվորներ ու ծառայողներ։ Շատերը չէին էլ հավատում, թե այդ կոմբայնը կարող է աշխատել։ Սակայն երբ Ժորան աշխատեցրեց մոտորը՝ բակը լցվեց նրա հնդյունով՝ Հարյուրավոր մարդիկ միահամուռ «ուռռա» կանչեցին։ Իսկ քիչ հետո Գրիշայի ու Ժորայի ռուս, ուկրաինացի, բելոռուս, ղազախ ընկերները նրանց երկուսին արդեն թափահարում էին իրենց ձեռքերի վրա։*

*Այսպես տափաստանում վերածնվեց «մեռած» կոմբայնը։ Այդ նույն կոմբայնով երկու ընկերները բերքահավաքի ժամանակ հնձեցին ավելի քան 700 հեկտարի բերք։*

* * *

*Ուրիշ շատ հերոսների մասին էլ կարելի է պատմել։ Բայց ո՞ր մեկի անունը հիշատակես. չէ՞ որ խամ ու խոպան հողերի յուրացման շրջաններում հերոսները հաշվվում են ոչ թե տասնյակներով, այլ հազարներով և նույնիսկ հարյուր-հազարներով։*

*Արդեն երեք տարի է անցել այն օրից, երբ առաջին էշելոնը մտավ Ղազախստանի տափաստանները։ Այդ ժամանակամիջոցում շատ բան է փոխվել խոպաններում։ Այստեղ բարձրացել են նոր գյուղեր, բանվորական ավաններ։ Ստեղծվել են հարյուրավոր կոլտնտեսություններ, սովխոզներ ու մեքենատրակտորային կայաններ։ Արդեն կես միլիոնից ավելի մարդ է ապրում տափաստաններում։ Այդ մարդիկ այժմ էլ գիշեր-ցերեկ պայքարում են բնության տարերքի դեմ և ձգտում հասնել է՛լ ավելի բարձր ցուցանիշների։*

*Ղազախստանի, Սիբիրի, Պովոլժյեի և այլ մարզերի ու շրջանների տափաստաններում մեր երկրի երիտասարդ հայրենասերներն արդեն մշակել են ավելի քան 35 միլիոն հեկտար խամ ու խոպան հող։*

*Կոմերիտմիության հերոս սաները ջանասիրությամբ են աշխատում ոչ միայն խամ ու խոպան հողերի յուրացման շրջաններում, այլև ամենուրեք՝ այնտեղ, ուր նրանց աշխատելու է կոչում Կոմունիստական պարտիան։ Ահա հենց այդ հերոսական ու ազնիվ գործերի համար էլ Սովետական կառավարությունը Լենինյան Կոմունիստական Երիտասարդության Միությանը պարգևատրեց 5-րդ շքանշանով՝ Լենինի շքանշանով։*



Խոպան հողերը մեկնած մի խումբ երիտասարդներ:
ՆԿԱՐՈՒՄ —(Ձախից աջ) Ս. Թումասյան, Գ. Մանուկյան, Գ. Ազատյան, Գ. Համբարձումյան, Մ. Գևորգյան, Լ. Մնացականյան:

# ՊԱՀԱԿԻ ՊԱՏՄԱԾԸ

### Է. ԱՎԱԳՅԱՆ

—Ես պահակ էի մի օր Սմոլնիում։
Ով մտնում էր ներս՝ «փաստաթուղթը ծեր» —
Ասում էի ես ու պատվի առնում.
Մեկ-մեկ ստուգում անցագրեր, թղթեր։
Եվ ահա դռնից մտնում է մի մարդ՝
Գլխին սև կեպի, հագին վերարկու,
Ոչ շատ ծեր էր նա, ոչ՝ երիտասարդ
Ու ժպիտ ուներ շատ բարի մարդու։
Տեսնում եմ, անձայն ուզում է անցնել.
Ես անմիջապես, մի քիչ կասկածոտ՝
Ասում եմ.—ո՞ւր է անցագիրը ծեր...
Նա սթափվում է, հետո մտածկոտ.

— Անցագի՞րը իմ,—հարցնում է կամաց
Ու սկսում է փնտրել գրպանում.
Հանում է, տալիս, մի պահ զարմացած,
Ես քարանում եմ, նայում եմ, նայում...
«Վլադիմիր Իլյիչ...» հպվում եմ դռան.
Սիրտս խփում է մի ինչ-որ ցավից։
— Խնդրում եմ ներեք,— ասում եմ նրան.—
Ա՜խ, ընկեր Լենին, ներեք, ներեք ինձ...
— Ներե՞լ, ի՞ր մեղքը,—Իլյիչն է ասում,—
Օրենքն օրենք է բոլորի համար,
Ու միշտ փոքրերը մեծին են լսում,
Այստեղ մեծ ես դու բոլորիս համար։

ԿԱՐԵՆ ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# Սաքի

(Գիտա-ֆանտաստիկական պատմվածք)

I

*Բանալին երկու անգամ պտտվեց կողպեքի մեջ, և Տիրանը զգաց, որ առանց պատիժը կրելու, ներման մասին ոչ մի խոսք լինել չի կարող։*

*Նա մի անգամ էլ բղավեց, բայց հասկացավ, որ միևնույն է, մոմլաթապատ դռները մորաքույր Աստղիկի համար անլսելի կդարձնեն իր ձայնը։ Տիրանը սրբեց աչքերը, մի քանի անգամ հառաչեց, նստեց բազկաթոռին ու սկսեց մտածել։*

*Տիրանը մեծերից լսել էր, որ հյուրը տանտիրոջ տանը ինչ-որ օրենքների համաձայն, ունենում է բազմաթիվ արտոնություններ և չտեսնված ընդունելություն։ Նա արդեն երկու օր էր, ինչ հյուր էր եկել մորաքույր Աստղիկի մոտ՝ քաղաքամերձ ամառանոցում իր արձակուրդի վերջին շաբաթը անցկացնելու համար։ Այս ամառանոցում էր բնակվում նաև պապիկը, այստեղ ոչ մի աղմուկ չէր խանգարում նրան աշխատելու։*

*Տիրանին էլ էին շատ ստիպում, որ լավ ուտի, լավ քնի, առավոտները շատ զգույշ էին քայլում, նրան չխանգարելու համար։ Այս ամենից նա բավականություն էր ստանում և անշնորհք հյուրի պես սկսում էր ավելորդ քմահաճությունները։*

*Երբեմն, (այդ լինում էր այն ժամանակ, երբ Տիրանը տարվում էր հեռուստատեսական հաղորդումներով և մոռանում քնելու մասին) մորաքույրը խստորեն նայում էր նրան ու հիշեցնում.*

*«Դե, բավական է։ Մարշ՝ քնելու»։*

*Դա վիրավորական էր։ Չէ՞ որ Տիրանն էլ արդեն մեծ էր՝ տասնմեկ տարեկան։*

*Եվ, ահա այդպիսի մեծ տղային, ինչ-որ հիմար պատճառով, փակում են պապիկի առանձնասենյակում և խոստանում, որ մինչև չխելոքանա, բակի երես չի տեսնի։*

*...Այդ սենյակում Տիրանը շատ քիչ էր լինում, որովհետև պապիկը անընդհատ աշխատում էր։*

*Նրա գրասեղանի վրա միշտ շարված էին լինում մեծ ու ծանր գրքեր։ Տիրանը հոգոց հանելով մտածում էր, թե արդյո՞ք կգա այն ժամանակը, երբ ինքն էլ կսկսի դրանք կարդալ։*

*Պապիկը հնեաբան էր։ Ճիշտ է, Տիրանը այդ բառի իմաստը չէր հասկանում, սակայն գիտեր, որ նա զբաղվում է կիսափտած, դեղնած ոսկորները խոշորացույցով զննելով։ Երբ պապիկի տրամադրությունը լավ էր լինում, Տիրանը համարձակությամբ մոտենում, հենվում էր նրա ծնկին և սպասում, թե երբ կսկսի պատմել Երկրի վրա միլիոնավոր տարիներ առաջ բնակվող ամենաբարձր շենքից էլ մեծ, հսկայական մողեսների մասին։*

*— Իսկ մարդիկ չէի՞ն վախենում այդ... այդ մողեսներից,—սարսափած այն մտքից, որ հան-*

կարծ բաղաքում կարող են հայտնվել այդպիսի հրեշներ, հարցնում էր Տիրանը։

— Ո՛չ,—պատասխանում էր պապիկը, ծիծաղելով թոռնիկի միամտության վրա։— Դա մեզոզոյան դարաշրջանում էր, երբ դեռ նույնիսկ մարդը գոյություն չուներ։ Այդ անտառներում, տափաստաններում, օվկիանոսներում, ծովերում և նույնիսկ օդում բնակվում էին միայն մողեսները։

— Պապիկ... ախր ինչպե՞ս կարող է մողեսը թռչել։

— Նախապատմական շրջանում այդպես էր,— բացատրում էր պապիկը աչքերը կկոցելով և ծխամորճից մի փոքրիկ ծուխ ամպ թողնելով։— Այդ մողեսներից ամեն մեկն ուներ իր անունը։

Եվ պապիկը սկսում էր թվարկել նախնադարյան մողեսներին իրենց անուններով՝ ստեգոցեֆալ, պարեյազավր, իխտիոզավր, դինոզավր, բրոնտոզավր, պլեզիոզավր և էլի շատ «զավր»—եր, որոնց Տիրանը դժվարությամբ էր հիշում։

Նա շատ քիչ բան էր հասկանում այս ամենից։ Բայց անչափ հաճելի էր հենվել պապիկի ծնկին ու զրուցել այնպես, ինչպես նրա մոտ հաճախակի այցելող գիտնականները։

2

Տիրանը որոշեց աչքի անցկացնել առանձնասենյակը, որը միշտ էլ հանելուկային էր եղել իր համար։

Լուսամուտի մոտ գտնվում էր քանդակներով ծածկված, կարմիր փայտից պատրաստած գրասեղանը։ Դիմացի անկյունում մինչև առաստաղն էին հասնում գրքերով ծանրաբեռնված գրապահարանները։ Իսկ գրասեղանի մոտ գտնվում էր ապակյա փեղկերով ևս մի պահարան, որի դարակները լի էին մեծ ու անճոռնի ոսկորներով, որոնք կարծես գոլիվերյան հսկաների գերեզմանատնից հանված լինեին։ Ասենք, ոսկորներ ամեն տեղ կային։ Նույնիսկ լուսամուտի գոգերը լի էին նրանցով։

Տիրանը մոտեցավ այդ պահարանին։ Չկարծեք, սակայն, թե նրան հրապուրում էին ոսկորները։ Ո՛չ...

Պահարանի աջակողմյան դարակում, կրկնակի փեղկերի տակ գտնվում էին դեղնա-կարմրավուն սաթի կտորները։ Նրանք նման էին հղկված, փայլեցված ծովաքարերի, միայն թե թափանցիկ էին։ Նրանց մեջ կային տարօրինակ բզեզներ, ճանճեր և ուրիշ շատ միջատներ։ Դրանց Տիրանը ոչ մի տեղ չէր տեսել։

Նրան ամենից շատ հետաքրքրում էր սաթերից մեկը, որի մեջ գտնվում էր դեղնա-արծաթագույն մի գնդիկ։

Մի անգամ մորաքույր Աստղիկը պատմեց, թե ինչպես էին այդ միջատները և գնդիկը ընկել սաթերի մեջ։

— Միլիոնավոր դարեր առաջ,—ասաց նա,— Երկրի վրա աճում էին հսկայական ծառեր, որոնք խեժ էին արտադրում, ինչպես, ասենք, եղևնին։ Միջատները թռչելիս, անզգուշաբար կպչում էին այդ խեժին, որն անընդհատ ծորալով, նրանց ծածկում էր բոլոր կողմերից։ Հետո այդ խեժը կարծրանում էր դարերի, հազարամյակների ընթացքում և դառնում սաթ։ Գիտնականները սաթի մեջ գտնվող միջատների ուսումնասիրությամբ կարողանում են որոշել, թե առաջներում ինչպիսի կյանք է եղել Երկրի վրա։

Այդ րոպեին, մորաքրոջ սիրելի ծուռթաթ շնիկը խելքին չգիտես ինչ փչեց, մոտեցավ Տիրանին։ Իսկ Տիրանը օգտվելով առիթից, ոտքը առաջ մեկնեց և ուժեղ սեղմեց շնիկի թավամազ պոչը։

Հետաքրքիր պատմությունը ընդհատվեց մի սարսափելի վնգստոցով ու աղիողորմ կլանչով։ Մորաքույրը, չիմանալով ինչպես վարվի անուղղելի տղայի հետ, անօգնական կերպով տարածեց ձեռքերը։

Տիրանը այնպես էլ չիմացավ արծաթավուն գնդիկի և դեղնագույն սաթի գաղտնիքը։

...Եվ ահա նա զգուշությամբ բացեց պահարանի ապակե դուռը, հրեց երկրորդ փեղկը, կանգնեց ոտքերի ծայրերի վրա, ձեռքը մտցրեց դարակի մեջ ու վերցրեց սաթը։

Հենց նոր էր նա տեղավորվել բազմոցի վրա ու ցանկանում էր մանրազնին ուսումնասիրության ենթարկել ավարը, երբ լսվեց բանալու ձայնը։

Տիրանը ճարպկությամբ թաքցրեց սաթը։ Նա ընդունեց դեմքի այնպիսի խեղճ արտահայտություն, որ պապիկը բարկացկոտ հայացքով ոտքից մինչև գլուխ չափեց նրան և առանց խոսելու մատով դեպի դուրս ցույց տվեց։

3

Ինչպես միշտ, հիմա էլ ոչ ոք չէր ուզում նկատած լինել Տիրանին։

Դա պատժի ճզրափակիչ մասն էր, որն ավելի անտանելի էր, քան սենյակում մենակ մնալը։



Այդպիսի դեպքերում Տիրանը հաստատապես որոշում էր այլևս ոչ մի զանցանք չկատարել։ Այդ որոշումը ուժի մեջ էր մնում այնքան ժամանակ, մինչև որ տնեցիներից մեկն ու մեկը, այլևս իրեն զսպել չկարողանալով, զայրագողի ժպտում էր։ Բավական էր, որ Տիրանը նկատեր այդ ժպիտը։

Նա վերստին սկսում էր ավերածությունները ավելի մեծ եռանդով, այս անգամ արդեն ծնողական հաղորդումները դիտելուց զրկվելու վտանգն աչքի առաջ ունենալով։

Սակայն այսօր Տիրանը չափազանց հետաքրքիր զբաղմունք ուներ։

Առանց ծպտուն անգամ հանելու, նա մտավ իր ննջասենյակը և փակվելով այնտեղ, սկսեց սուր զմելիով զգուշությամբ քերել սալթը։ Նա աշխատում էր լռեցված խնամքով, վախենալով, որ հանկարծ հանելուկային գնդիկին բան կպատահի։

Մոտ երեք ժամվա քրտնաջան աշխատանքից հետո Տիրանին հաջողվեց հնադարյան ծառերի խեժի միջից հանել գնդիկը։

Որքա՜ն մեծ էր նրա հիասթափությունը, երբ պարզվեց, որ գնդիկը մի սովորական կրաքարի կտոր է։

Նա բարկանալով մի կողմ դրեց գնդիկն ու զմելին և դուրս վազեց բակ՝ խաղալու։

Այդպես էլ նա չզգաց, թե ինչպես մուժը ընկավ։ Խաղից սթափվեց մորաքույր աստղիկի ձայնից, որը հիշեցնում էր, թե արդեն ընթրելու ժամանակն է։

4

Հաջորդ օրը առավոտյան Տիրանը զարթնեց մի տարօրինակ բզզոցից։

Արևի շողերը պատուհանի վարագույրների արանքից ներս էին թափանցել և դիմացի պատին ստեղծել լուսավոր շրջաններ ու շերտեր։ Փոշու մանրիկ, հազիվ նկատելի հատիկները անհանգիստ շերեփուկների նման բոլոր ուղղություններով լողում էին արևի շողերի տակ։

Տիրանը աչքերը կիսով չափ բացեց, այն հույսով, որ կտեսնի ճպուռների կամ մայիսյան բզեզների մի ամբողջ երամ։ Հիրավի, բզզոցը այնքան ուժեղ էր, որ թվում էր, թե անպայման այդ աղմկարար միջատները վաղ առավոտյան, չար դիտավորությամբ իրենց զորքը հանել են սենյակում քնած տղայի դեմ։

Բայց ոչինչ չտեսավ։ Իսկ բզզոցը շարունակվում էր։

Հանկարծ, արևի շողերի տակ մի հսկայական ճպուռ աստղի պես փայլեց ու նորից կորավ սենյակի կիսամութի մեջ։

Տիրանը վեր թռավ։

Ճպուռը կլիներ մոտ կես մետր։ Իսկ թևերը... թևերը նման էին ինքնաթիռի մոդելի պտուտակներին, որոնց թափահարումից երբեմն Տիրանը դեմքի վրա չարագուշակ հով էր զգում։ Բզզոցը ավելի ուժեղացավ։

Տիրանը մոտ վազեց պատուհաններին, բացեց վարագույրները և տենչելով առաստաղի բիվի տակ բզզացող ճպուռին, որոշեց... բռնել նրան։

Նա վերցրեց ցանցն ու սկսեց հետապնդումը։

Ճպուռը կարծես հասկացավ տղայի դիտավորությունը. չէր ուզում որևէ տեղ կանգնել։ Իսկ Տիրանը դրանից համարձակություն ստանալով, ըսկըսեց ավելի եռանդով հետևել բզզացող հսկային։

Վերջապես ճպուռը նստեց... Տիրանի գլխին։ Մինչև տղան ուշքի կգար, կեսմետրանոց մարմին ունեցող ճպուռը մի քիչ ավելի ցած իջավ... Տիրանը ճակատի վրա մի սարսափելի ցավ զգալով, բարձրաձայն ճչաց։

Նա ձեռքերը թափահարեց ու ընկավ գետնին։ Կարծես նիրհի մեջ՝ զգաց, թե ինչպես նրա վազեցին պապիկը, մորաքույր Աստղիկը՝ դեռևս չսանրած մազերով ու էլի ինչ-որ ստվերներ։



5

Սենյակում լռություն էր տիրում։

Տիրանը պառկած էր վիրակապերով փաթաթված գլխով։ Անտանելի ցավերից նա արդեն հոգնել էր բղավելուց և միայն թույլ տնքում էր։

Երբ պարզվեց, որ նրան խայթել է մի չտեսնված մեծության ճպուռ, բժիշկներն ու պրոֆեսորներն իրենց անդադար այցելություններով ուղղակի ձանձրացրին Տիրանին։ Բժիշկները չէին խնայում ոչ իրենց և ոչ էլ Տիրանին, առատորեն ինչ-որ հեղուկներ էին ներարկում՝ հաբեր տալիս և ջերմությունը չափում։

Հենց քիչ առաջ Տիրանին սեփական իսկ ձեռքերով սրսկում կատարելուց հետո պրոֆեսորը անցավ հարևան սենյակը և սկսեց պապիկի հետ ցածրաձայն խոսել։

Տիրանը ականջ դրեց։

—... Նման անսպասելի երևույթներ հաճախ են պատահում գիտության աշխարհում,—ոգևորված ասում էր պապիկը։—Պատահում է, որ տարիներ, հարյուրամյակներ անցնելուց հետո բույսերի սերմերը դեռ չեն կորցնում իրենց ծլունակությունը։ Սաղմը ընկնելով անբարենպաստ պայմանների մեջ,



ոչ թե մեռնում, այլ միայն դանդաղեցնում է իր կյանքի պրոցեսները։ Հետո առաջին իսկ պատեհ առիթից, անմիջապես արթնանում է և, խնդրեմ, յոթ-ութ հարյուր տարվա ցորենի սերմը նորից աճում և հասկ է տալիս։

Պապիկը շատ ցածր էր խոսում։ Տիրանը հենվեց արմունկի վրա ու շունչը պահեց։

— Ուրեմն, դուք պնդում եք, որ ճպուռը ծնվել է նախնադարից մինչև մեր օրերը հասած ձվի՞ց...

— Ոչ թե նախնադարից,— ուղղեց պապիկը,— այլ քարածխային դարաշրջանից, այսինքն այն ձվից, որը ունեցել է ամենաքիչը երեք հարյուր միլիոն տարվա սաղմնային բնած կյանք...

— Բայց դա անհավանական է...— լսեց Տիրանը պրոֆեսորի բողոքող ձայնը։

— Ամեն ինչ պատահում է,— նույն հանգիստ տոնով շարունակեց պապիկը։— Ձուն, բարեբախտաբար, ընկել է չտեսնված լավ և ապահով պայմանների մեջ։ Սաթը մի յուրատեսակ սարկոֆագի է վերածվել, որը սաղմին զերծ է պահել ամեն տեսակի պատահարներից։

— Բայց մի՞թե հնարավոր է ճպուռի այդքան արագ աճը,— լսվեց պրոֆեսորի նույն կասկածոտ ձայնը։

— Իհարկե,— ասաց պապիկը։— Ձուն էլ այնքան փոքր չէր։ Համենայն դեպս, ես շատ կուզեի, որ ճպուռը ապրեր։ Հասկանո՞ւմ եք, աղջիկս՝ Աստղիկը, տեսնելով հսկայական ճպուռը թոռանս վրա, հողաթափով այնպես ճզմեց խեղճ միջատին, որ ես հազիվ կարողացա գոնե նմուշի համար պահպանել նրա թևերը, գլուխը և մարմնի մի մասը։ Ճպուռն ընդամենը մեկ օրական էր։ Ինձ շատ էր հետաքրքրում, թե ինչպիսի մեծության նա կհասնի մի քանի օր հետո։

— Ափսոս,— ցավակցեց պրոֆեսորը։— Երեխաների չարաճճիությունները երբեմն անելանելի դրության մեջ են դնում մեզ։ Մասնավորապես ինձ երբեք չէր վիճակվել ու, համոզված եմ, որ չի էլ վիճակվի այլևս բուժել այնպիսի հիվանդի, որին խայթել է երեք հարյուր միլիոն տարի առաջ ապրած ճպուռը։

— Եթե ես իմանայի, որ ձուն ծլունակությունը չի կորցրե՞լ...— լսվեց պապիկի հառաչը։— Ինչպիսի՜ կորուստ գիտության համար... Ձեռքից փախցնել կենդանի մի բրածո... Ես չգիտեմ, թե ինչպես պատժեմ այդ տղային, որ նա վերջապես խելքի գա...

— Նա արդեն պատժվել է...— ասաց պրոֆեսորը։— Կարիք չկա... արդեն մեծ տղա է։

— Այնուամենայնիվ, ես նրան կպատժեմ,— ասաց պապիկը և շարունակեց բարկացած բրթմնջալ, որից Տիրանը ոչինչ չկարողացավ հասկանալ։

...Ճակատի ցավը չէր անցնում։ Հոնքի վերևը, ուր խայթել էր ճպուռը, կարծես հարթուկում էին շիկացած հարթուկով։

Բայց Տիրանը ուրախ էր։ Պրոֆեսորը նրան մեծ տղա էր անվանել։ Մի շատ կարևոր բան, որը չէին ուզում նկատել մորաքույր Աստղիկը և պապիկը։

Ճիշտ է, պապիկի խոստացած պատժի հեռանկարը բոլորովին չէր հրապուրում Տիրանին։ Բայց երջանիկ էր նա։

Ի՞նչ փույթ, որ ճպուռը սատկել էր։ Ի՞նչ փույթ, որ պապիկը զրկվել էր կենդանի բրածոյից։

Տիրանը պատկերացնում էր, թե ինչպես կնախանձեն իր դասընկերները, ինչպես սարսափից կճչա Հասմիկը, երբ ինքը հպարտությամբ կպատմի, որ արձակուրդների ժամանակ իրեն խայթել է երեք հարյուր միլիոն տարի սրանից առաջ ապրող ճպուռների ներկայացուցիչը...






Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

*Չորս հսկայական շենք միացել են իրար ու իրենց մեջ ստեղծել մի մեծ քառակուսի տարածություն։ Դա հենց մեր բակն է։ Բակի կենտրոնում մի փոքրիկ պարտեզ կա՝ կարմիր ավազով ծածկված ծառուղիներով։ Պարտեզում ջրի ավազանն է՝ փոքրիկ շատրվանով. ծառերի տակ դրված են ծանր, երկար նստարաններ, իսկ ծառերի արանքներում կլոր ու ծվածև հողաթմբեր են, որոնց վրա ամեն գարնան հարյուրավոր ու հազարավոր գույնզգույն ծաղիկներ են լինում։ Պարտեզը ցանկապատված է կարճ փայտե ցանկապատով, որ չորս կողմից փոքրիկ դռնակներ ունի։ Ցանկապատից դուրս դեռ ահագին տարածություն կա մինչև շենքերի պատշգամբները. այդ տարածությունը երեք կողմից ասֆալտապատ է, մի կողմից՝ ոչ։ Այնտեղ, որտեղ ասֆալտ չկա, մեր սպորտային հրապարակն է, վազքուղին, թռիչքի փոսը, վոլեյբոլի և բասկետբոլի դաշտերը։ Ազատ ժամերը մենք այդտեղ ենք անցկացնում, խաղում ենք, մրցում, վիճում և ճիշտն ասած, մեկ-մեկ էլ կռվում։ Հիմա էլ չենք կռվում, բայց մի ժամանակ կռվում էինք գրեթե ամեն օր։ Ամենից շատ կռվում էին երեք մարդ՝ Ալբերտը, որ վեցերորդ դասարանցի է, Սերժը, որի մաման գրամեքենա ունի, իսկ հայրիկը՝ ավտոմեքենա, և Հարութը, որին Ալբերտն ու Սերժը «Մնացուկ» էին ասում։*

*Մեր բակը շրջապատող շենքերում այնքան շատ մարդ է ապրում, որ բոլորին ճանաչել հնարավոր չէ, բայց Հարութին ու նրանց ընտանիքին ճանաչում էին բոլորը։*

*Հարությենց ընտանիքը չորս շենքերից ոչ մեկում չէր ապրում։ Բանն այն է, որ մեր բակի ծայրում, հենց Ալբերտենց պատշգամբի առաջ դեռ մինչև վերջերս էլ տնկված էր Հարությենց խարխուլ տունը։ Այդ տանը երկու սենյակ կար, երկու էլ կիսաքանդ սենյակ, որոնց կանգուն մնացած պատերի վրա դեռ երևում էր փոշոտված յուղաներկ ծեփը, և մի կամարակապ նկուղ, որը դուռ չուներ, դռան փոխարեն ուներ կիսալուսնաձև մի մութ բերան։ Ահա այդ տանն էին ապրում Հարութը, նրա հայրիկը, որ դանակ-մկրատ սրող էր, նրա մայրիկը, որ տանը գործ էր անում և տատը՝ Վանանուշ մորքուրը, ինչպես նրան անվանում էին բոլոր ծանոթները։*

*Հարությենց ընտանիքը շուտով այդ տնից տեղափոխվելու էր նոր բնակարան, նրա մայրիկն արդեն ուրախ-ուրախ հարևաններին պատմում էր.*

*— Գնացի թազա տունը տեսա, տուն մի ասի, մի պալատ ասա, կուխնի, պառավո... Տեխնիկը մի բան էլ ասավ, միտս չի, կլադովո ա, ի՞նչ ա։*

*Այդ բոլորը, սակայն, դեռևս ամիսներ հետո էր լինելու, իսկ մինչ այդ Հարութն ու նրանց ընտանիքը ապրում էին մեր բակում։*

*Հարութը լավ տղա էր, բայց ինչպես Վանանուշ մորքուրն էր ասում, «Թե պոչ տորոբես, պեծ ի», այսինքն շուտ է վրդովվում, իսկ Ալբերտն ու Սերժը անընդհատ նրա «պոչը տրորում էին», ծաղրում էին նրան։*

*— Պարզ է, որ դու կապիտալիզմի մնացուկ ես. մանր բուրժուա։*

*— Մնացուկը դուք եք, ես մնացուկ չեմ, համ էլ բուրժուա չեմ։*

*— Բա որ մանր բուրժուա չես, այդ ինչպե՞ս է, որ սեփական տուն ունեք...*

— Տո ի՞նչ սեփական, էնա գնում ենք էլի…

Հարութը գայրանում էր, նրա սև ու խոշոր աչքերը մթնում էին, քունքները կծկվում։ Մենք իսկույն մեջ էինք ընկնում կռիվը կանխելու, իսկ Սերժը հանգիստ արհամարհանքով ժպտում էր և ասում.

— Չէ՛, համենայնդեպս, դու մնացուկ ես։

Այս վեճը նույնությամբ կրկնվում էր ամեն օր։ Ալբերտի ծնողներն իսկի բակում չէին լինում, Հարութի մայրիկը վեճի հետ գլուխ չուներ, միայն տատն էր մեկ-մեկ լսում, նա էլ բավարարվում էր բավական անտարբեր ասված մի նախադասությամբ։

— Ջանմ, հարևան եք, յոլա գնացեք…

Ինչ վերաբերում է Սերժի մամային և հայրիկին, ապա նրանք տարբեր կերպ էին ընդունում տղաների վեճը։ Սերժի մաման՝ տիկին Սոֆիկը, մերթ ընդ մերթ դուրս էր գալիս պատշգամբ և գայրացած հրամայում։



— Սե՞րժ, դարձյա՞լ, տուն դարձիր շուտ,— ու ձայնն ավելի բարձրացնելով ավելացնում էր,— ջութակի դասդ պատրաստե՞լ ես։

Իսկ հայրիկը մի անգամ տղաների վեճը լսելով, Սերժին ասաց.

— Հիմարություններ ես դուրս տալիս, չես էլ ամաչում, անմիջապես ներողություն խնդրիր։

Հայրիկն ասաց ու գնաց, իսկ Սերժն, իհարկե, ներողություն չխնդրեց։

Եվ ինչպե՞ս կարող էր ներողություն խնդրել Սերժը, այն էլ Հարութից։

Սերժը իր մասին շատ մեծ կարծիք ուներ։ Ասենք, նրա մասին մեծ կարծիք ուներ նաև նրա մաման։ Մաման ասում էր, թե երաժշտական դպրոցում Սերժից ընդունակ տղա չկա։ Նա առիթը բաց չէր թողնում մարդկանց ցույց տալու թերթի մի համար, որտեղ նկարված էր Սերժը՝ ջութակը ձեռքին։ Նկարի տակ մակագրություն կար. «Շնորհալի մանուկ ջութակահար Սարգիս Մանվելյան»։

— Սերժս է,— պարծանքով ասում էր տիկին Սոֆիկն ու սպասում, թե դիմացինն ինչ կասի իր տաղանդավոր տղայի մասին։

Բակում Սերժն ընկերություն էր անում միայն Ալբերտի հետ, բայց նրանց ընկերությունն էլ շատ էր տարօրինակ։ Ալբերտը Սերժի փոխարեն թվաբանական խնդիրներ էր լուծում, ամեն տեղ պաշտպանում էր նրան, իսկ երբ դրա համար մենք նրան կշտամբում էինք, նա տաքացած ասում էր.

— Դուք ընկերությունը չեք հասկանում, իսկ դուք գիտե՞ք, թե ինչպիսի ընկերներ են եղել չելյուսկինյանները, իհա՛րկե, չգիտեք։

Մենք բողոքում էինք, ասում էինք, որ չելյուսկինյանների ընկերությունը բոլորովին էլ այդպես

չի եղել, Ալբերտին անվանում էինք «Սերժի պոչ»... Նա բարկանում էր և կռիվ սարքում։

Իսկ Սե՞րժը, Սերժը բակում շրջում էր ինչպես փքված աքաղաղ։ Փոքրիկներին նա բանի տեղ չէր դնում, մեզ էլ միայն երբեմն էր արժանացնում պատասխանի՝ այն էլ այն ժամանակ, երբ հարցնում էինք նրա հաջողությունների մասին.

— Այո, ֆեստիվալին նվագելու եմ մի բարդ երգանակ...

Մենք շատ հաճախ շաբաթօրյակներ էինք կազմակերպում. բակն էինք մաքրում, ցանկապատը ներկում, պարտեզում նոր ծառեր տնկում, խնամում ծաղիկները։ Այդ աշխատանքներին Սերժը չէր մասնակցում։

— Ես ջութակահար եմ,—ասում էր նա,—չի կարելի, իմ մատները կկոշտանան...

— Իսկ երբ բասկետբոլ ես խաղում, մատներդ չե՞ն կոշտանում,—խայթում էր Հարութը։

Սերժը կամ արհամարհանքով լռում էր, կամ զայրացած ասում.

— Դու ծայնդ կտրիր, մնացուկ...

Նրա բաժին աշխատանքն Ալբերտն էր անում, իսկ նա Ալբերտին խոստանում էր.

— Վաղը զբոսանքի կգնանք մեր ավտոմեքենայով։

Բայց Սերժի բնավորության ամենաուժեղ գիծը համառությունն էր։ Ո՛չ ոք չէր տեսել, որ Սերժը վեճի մեջ իրեն պարտված ճանաչի, եթե որևէ բան ասաց, պրծավ, անկարելի էր նրան հակառակը համոզել։ Ամուր տղա էր, սպորտային խաղերի մեջ բակում առաջինը, բայց երբ նա խաղում էր ու նրանց կողմը հանկարծ տանուլ էր տալիս, գազազում էր, կոպտություններ անում, իսկ երբ մենք նրան կարգի էինք հրավիրում, թունավոր ժպիտով ասում էր.

— Ցրվեցե՛ք, խուժաններ...

Մի անգամ նույնիսկ Ալբերտի հետ կռվեց։ Շախմատ էին խաղում, Ալբերտը նրան երեք անգամ իրար ետևից հաղթեց։ Նա կատաղած վեր կացավ ու ասաց.

— Դու գող ես, դու իմ նավակը գողացար։

— Ո՞նց թե,—ապշեց Ալբերտը։

Այո։ Ես քեզ հետ այլևս չեմ խաղա, մինչև դու բոլորի մոտ չխոստովանես, որ իմ նավակը գողացար...

Ալբերտը բողոքեց, բայց Սերժը նրան էլ չխնայեց ու ասաց իր սիրած բառերը.

— Խուժան, մնացուկ...

Ու հեռացավ բազուկի նման կարմրած։

Չգիտեմ, հետո ինչպես հաշտվեցին, բայց այդ օրվանից մենք ավելի զայրացանք Սերժի ու Ալբերտի վրա, իսկ Հարութն Ալբերտի մասին բարձրաձայն ասաց.

— Դեռ չելյուսկինյանների մասին է խոսում, էհ էլ ամաչում, փալաս...

* * *

Բակում երկու թիմ կար՝ «Դինամո» և «Սպարտակ»։ Ես ու Հարութը «Դինամո» թիմում էինք խաղում, ես դարպասապահ էի, իսկ Հարութը՝ կենտրոնական հարձակվող։ Մեր թիմը երկու գնդակ ուներ։ Դրանցից մեկը Սերժի մամյան բռնագրավեց, երբ մենք անզգուշաբար ջարդեցինք նրանց պատուհանի ապակին, իսկ մյուսը շատ հին գնդակ էր, համարյա թե անպետքացած։

«Սպարտակ» թիմի կազմում «վարպետներն» էին խաղում, դրանց մեջ՝ նաև Սերժն ու Ալբերտը, երկուսն էլ հարձակվողներ։

Նրանց թիմը երեք գնդակ ուներ, երեքն էլ նոր, լավ գնդակներ։ Բայց այդ բոլորը չէ, նրանց թիմի տղաները սպորտային կարմիր մայկաներ ունեին, որոնց վրա սպիտակ ներկով համարներ էին գրած։

Պետք է խոստովանեմ, որ մենք միշտ պարտվում էինք։ Տղաներն ասում էին, թե մեղավորը ես եմ, չեմ կարողանում գնդակները բռնել։

* * *

Մի անգամ նորից ֆուտբոլի մրցում կազմակերպեցինք։ Այդ օրը մենք որոշել էինք ինչ գնով էլ լինի, հաղթել «վարպետներին»։

— Տես հա,—ասաց ինձ Հարութը,—գնդակները լավ կբռնես։

Ես խոսք տվի։

Եվ չգիտեմ, դրանից էր, թե ինչ, բայց այդ օրը շատ լավ էի բռնում։ Երեք անգամ Սերժն ամուր հարվածեց դեպի մեր դարպասը, երեք անգամն էլ բռնեցի։ Միայն մի անգամ Ալբերտին հաջողվեց գնդակն անցկացնել մեր դարպասով։

Իսկ մեր թիմի տղաներն այդ օրը շատ լավ էին խաղում, հրաշալի էր խաղում, հատկապես, Հարութը։ Երբ գնդակը նրան էր հասնում, «Սպարտակի» խաղացողներից ոչ մեկը չէր կարողանում խլել։ Նա գնդակը խաղացնելով խաբում էր հակառակորդներին ու քամու նման առաջ սլանալով, անսպասելի հարվածում ուղիղ դարպասին։ Ճիշտ է, «Սպարտակի» դարպասապահն ինձնից լավ էր խաղում ու շատ հաճախ կարողանում էր բռնել Հարութի ուղարկած գնդակները, բայց մեկ-մեկ էլ պատահում էր, որ գնդակն անցնում էր նրա մոտով կամ ուղղակի ոտքերի արանքով։ Այդպիսի դեպքերում Հարութը հաճույքից գոռում էր, իսկ Սերժն ու Ալբերտը գոռում էին զայրույթից։

Խաղն արդեն վերջանալու վրա էր, իսկ հաշիվը մնում էր 3 : 1՝ մեր թիմի օգտին։ Սերժն ու Ալբերտն այնպես էին բարկացել, որ արդեն սկսել էին կոպիտ խաղալ՝ ուշադրություն չդարձնելով նույնիսկ «դատավորին», որը մի փոքրիկ, ճարպիկ աղջիկ էր։ Նրանք ոտքով խփում կամ հրում էին մեր թի-



մի խաղացողներին, գռզռում, գնդակը բռնում ձեռքով։ Իսկ Հարութն ու մեր մյուս տղաները գնալով ավելի համերաշխ ու լավ էին խաղում։

Երբ Ալբերտը կրկին դեպի մեր դարպասը հարվածեց, ես ճարպկությամբ գնդակը բռնեցի և ուղղակի ձեռքով գցեցի Հարութին։ Հարութը գնդակն առած առաջ սլացավ։ Երկու կողմից Ալբերտն ու Սերժը նրա վրա հարձակվեցին։ Ալբերտը սայթաքեց ու ընկավ, իսկ Սերժը Հարութին հասավ այն ժամանակ, երբ նա աջ ոտքը ետ տարած, պատրաստվում էր գնդակին հարվածելու։

Հանկարծ Սերժն առաջ թռավ և ոտքով ամուր հարվածեց Հարութի ծնկին։ Լսվեց մի բարձր ճիչ, և Հարութը թևատարած փռվեց գետնին։

Սերժը փախավ։ Մենք դեպի Հարութը վազեցինք։ Նա գալարվում էր ծունկը բռնած։ Մեր աղմուկից և նրա բարձր հեկեկանքից մեծերը դուրս թափվեցին բակը։

— Ի՞նչ է պատահել,—հարցնում էին նրանք մեզ մոտ շտապելով։

— Վա՜յ, ո՛տքս, ո՛տքս, վա՜յ,—գոռում էր Հարութը։

— Սերժն արեց, Սերժն արեց,—ճչում էին ամեն կողմից մեր խաղի փոքրիկ հանդիսատեսները։

Իմ հայրիկը Հարութին գրկեց ու դրեց մոտիկ նստարանի վրա, իսկ մենք իրար առաջ կտրելով սկսեցինք մեծերին պատմել պատահարի մանրամասնությունները։

Մեծերը զայրույթով էին լսում մեր պատմությունը։

— Էկստված երեխա է,—ասաց մի ծեր ուսուցչուհի։

— Պա էս պան ի՞,—բողոքեց Վանանուշ մորքուրը,—ո՞ւր կորավ էտս լակոտ։

Այդ ժամանակ պատշգամբում երևաց Սերժի մաման

— Դե, դե, չափդ ճանաչիր,—բարձրաձայն ասաց նա,—դու ի՞նչ իրավունք ունես վիրավորելու։

Բոլորը զայրույթով նայեցին Սերժի մամային, իսկ նա հավաքեց մետաքսե գույնզգույն խալաթի փեշերը և արհամարհանքով շուռ եկավ.

— Սրան նայեք, գռեհի՛կ...

Ու հեռացավ պատշգամբից։

Հարութին հիվանդանոց տարան։ Երկու ամիս նա մնաց հիվանդանոցում։ Նրա ոտքը գիպսի մեջ էին դրել։ Առաջին օրերի ցավերն անցել էին, այժմ նա պառկած էր հանգիստ, որպեսզի դասերից ետ չմնա, սիստեմատիկաբար պարապում էր։ Մենք նրա համար գրքեր ու միրգ էինք տանում, իսկ նրանց դասարանցի մի տղա ամեն օր հիվանդանոցի աշխատակցի միջոցով նամակ էր ուղարկում՝ մանրամասն գրելով օրվա դասերը։

Քանի դեռ Հարութը հիվանդանոցում էր, Սերժը գրեթե բակ չէր իջնում։ Մենք կարծում էինք, թե նա զղջացել է իր արածը և խղճի խայթ է զգում,

և պատրաստ լինի ներել նրան։ Ալբերտը շատ էր փոխվել։ Այժմ նա ամեն կերպ աշխատում էր մեզնից ետ չմնալ Հարութին օգնելու գործում։ Իսկ մի անգամ, երբ Հարութի հայրիկը ձմեռվա համար վառելափայտ էր ստացել, Ալբերտն առաջարկեց, որ մենք ինքներս փայտը դատարկենք ավտոմեքենայից, սղոցենք, կոտրենք և դարսենք Հարութենց նկուղում։ Հարութի հայրիկը ուրախացած մեզ սղոց ու կացին տվեց ու մենք կպանք գործի։

Սերժի մաման էլ մի անգամ հետաքրքրվեց Հարութի վիճակով։

Առավոտ էր։ Վանանուշ մորքուրն ավելը ձեռքին դուրս էր եկել դռան առաջը սրբելու։ Այդ ժամանակ Սերժի մաման բակում խոսում էր մի անծանոթ կնոջ հետ։ Վանանուշ մորքուրին տեսնելով նա հարցրեց.

— Ինչպե՞ս է ձեր տղայի... անունը մոռացա... Հա, Արութի առողջությունը։

— Շնորհակալ եմ, լավ է,—նեղացած ասաց Վանանուշ մորքուրը։

— Ա՛յ, ա՛յ, ա՛յ,—գլուխն օրորեց Սերժի մաման և անծանոթ կնոջը դիմելով, ավելացրեց,—անա թե ինչ է նշանակում վատ դաստիարակություն, երեխային, ներեցեք արտահայտությանս, վայրենի են դարձրել։

Վանանուշ մորքուրն ապշեց. նրա աչքերում արցունքներ երևացին։ Նա զայրույթից դողում էր ամբողջ մարմնով։ Մեզ թվում էր, թե հիմա ձեռքի ավելը Սերժի մամայի երեսին կշպրտի։ Բայց նա լուռ շրջեց երեսը և հանկարծ, մեզ համար անսպասելի, խզված ձայնով ասաց.

— Ամոթ, ամոթ, ինչպե՞ս չեք ամչնա։

— Պա՛հ, երևակայո՞ւմ եք,—քմծիծաղ տվեց Սերժի մաման։

— Հի՛, հի՛, հի՛,—պատշգամբից լսվեց Սերժի ծիծաղը, և մեզ համար պարզ դարձավ, որ նա բակ չէր իջնում ոչ թե այն պատճառով, որ զըղջում էր արածն ու խղճի խայթ զգում, այլ որովհետև վախենում էր մեզանից։

* *

Հարութն արդեն առողջացել է։ Հիմա նրանք այլևս մեր բակում չեն ապրում, մի ամիս առաջ նոր բնակարան տեղափոխվեցին։

Իսկ Սերժը չի փոխվել, այժմ էլ նա նույն չար ու գոռոզ տղան է։ Տարբերությունն այն է, որ այժմ բակում ոչ ոք չի ուզում նրա հետ խաղալ, իսկ նրա հայրիկն այլևս ոչ մի անգամ նրան իր ավտոմեքենայով դպրոց չի տանում, ինչպես անում էր առաջ։ Ավելին, մի անգամ լսեցի, թե



ինչպես իմ հայրիկին տխուր ասում էր.

— Է՛հ, ընկեր Մեսրոպ, այս ամբողջ բակում ինձնից դժբախտ մարդ չկա...





# ՊԵՅԶԱԺ

ԱՐՄԵՆԱԿ ՂԱԶԻՆՅԱՆ

Թուխ ամպերից
Տեղաց նորից
Գարնան անձրևն առաջին
Ու կարոտած,
Շուրթերով թաց
Համբույր ցողեց կանաչին:
Գետակները,
Վտակները
Զվարթ կանչով վազեցին,
Ծաղիկները
Աչիկները
Բացած՝ անուշ բուրեցին:

Ամպի տակից
Ժպտաց անբիծ
Վառ արևը սրտաբաց,
Արտույտ, սարյակ,
Լոր, ծիծեռնակ
Համերգեցին հիացած:
Մով երկնքով
Թեթև ու զով,
Թուխ ամպերը լուռ անցան
Ու լեռներում
Շքեղ, սիրուն,
Կապեց պայծառ ծիածան:

# ԳԱՐՈՒՆ

ՊԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Արդեն արև է, արդեն գարուն,
Տես, կարկաչում է վազող առուն,
Ու ծաղիկներից բուրմունք առած՝
Զեփյուռը եկել, լցվել է տուն:

Ինչ սիրուն գորգ է փռվել բակին,
Եվ հազար երանգ՝ ծառ ու ծաղկին,
Իսկ ծիծեռնակը՝ իմ բարեկամ,
Վերադարձել է անա կրկին:

Այնպես է երգում, փարվում ծառին,
Կարոտով նայում սարին, քարին,
Մի պահ թվում է, թե գարունը
Հենց ինքն է փռել այս աշխարհին:

# ԳԱՐՆԱՆԱՅԻՆ

ԼՅՈՒԴՎԻԳ ԴՈՒՐՅԱՆ

Ծաղկել է ծառը,
Եկել ծիծառը,
Վարարել, երգում է առուն,
Խայտում է շողը,
Բուրում է հողը,
Ամենուր զարթոնք է, գարուն:

Ծփում է խոտը,
Փռվել է հոտը,
Բացվել են ճամփեքը սարի,
Գառնուկը գրկին,
Ժպտում է կրկին
Կոլխոզի հովիվը բարի...

# ՁՆԾԱՂԻԿ

Մ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

Դաշտում, սարում ձյուն է դեռ,
Ոչ թռչուն կա, ոչ՝ թիթեռ,
Արևը չի հուրհուրում,
Ծաղիկները չեն բուրում։
Ծիլերը ցուրտ հողի տակ,
Առած վերմակ սպիտակ,
Սպասում են, սպասում,
Գարնան գալն են երազում։
Մեխակն ասաց.
— Քույրիկներ,
Անուշաբույր ծաղիկներ,
Մեկը մեզնից թող գնա,
Գարնան գալը իմանա։
Յուղածաղիկ, դու գնա։
Ինձ համար վաղ է հիմա։
Իսկ դո՛ւ, հոտավետ Զամբեղ։
Ես չեմ գնա ոչ մի տեղ։
Գնա, անուշ Զանգակիկ։
Տեսեք, ես շատ եմ փոքրիկ։
Շուշան, քնքուշ ու անբիծ,
Դո՛ւ բեր գարնան լուրը ինձ։
Խոսքդ մերժել չեմ ուզում,
Բայց այնպե՜ս եմ ես մրսում...
— Դու, Մանուշակ, դո՛ւ գնա։
Դրսում դեռ ցուրտ է հիմա։
Ապա ինչպե՞ս իմանամ։
Սիրուն մեխակ, ե՛ս գնամ...
Ո՛վ ես, ասա, սիրունս։
Ձնծաղիկ է անունս.—
Ասաց ձյունի ծաղիկը,
Բացեց կապույտ աչիկը,
Եվ Մեխակին մոտեցավ,
Համբուրեց ու հեռացավ։
Ծաղիկները նայեցին,
Եվ սարսափով ասացին.
— Կմոլորվի ձյունի մեջ...
— Ափսոս ծաղիկ, ափսոս, խեղճ...
Անցան օրերը ձմռան,
Շողաց արևը գարնան,
Ծաղիկները բացվեցին,
Տեսան կապույտ-աչիկին,
Թոշնել էր նա, չորացել,
Լոկ ցողունն էր մնացել։
Արտասվեցին, լաց եղան.
Ափսոս, մեր քույր աննման...
Սակայն Մեխակը նրանց
Մխիթարեց ու ասաց.
Քույրեր, ինչո՛ւ լաց լինենք,
Նրան պետք է նախանձենք.
Տեսեք, թոշնել է, սակայն
Նա առաջինն է տեսել
Գարնան արևն հուրհրան...





# ԱՐՏԱԿԱՐԳ ԳՈՐԾ

Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Մի քանի ժամ էր, ինչ Վանիկն այս ու այն կողմ էր թափառում։

Նա մի լավ, արտակարգ կարևոր ու լավ բան պատրաստելու չտեսնրված ցանկություն ուներ։

Բայց ինչ։

Ինչ էլ ուզում է թող լինի, միևնույն է, նա պետք է գտնի այն. միայն թե գտնի... իսկ պատրաստելը, դա Վանիկի համար դատարկ բան է։

Պապը նրան առաջարկել էր նոր հավաբնի հիմքը փորել։ Բայց Վանիկը հրաժարվել էր. նույնիսկ վիրավորվել։

Մի անգամ էլ էր նա այդպիսի կարևոր և անբացատրելի ցանկություններ ունեցել. ծռռնել էր, ոռնել... ի վերջո մի քիչ մուրաբա էր կերել ու... ամեն ինչ անցել էր։

Բայց այս անգամ ոչինչ չէր օգնում. նա արդեն չորս տեսակ մուրաբա էր կերել, քարով ջարդել էր հարևան տան ապակիները, ծեծել էր փոքր եղբորը, բայց իզուր... այդ բոլորից նա միայն մի քիչ վախեցել էր ու վերջ։

Ի վերջո, երկար թափառելուց հետո նա նկատեց մի շատ հաճելի և արտակարգ փայտ, հարթ տաշված ու ներկված. բանջարանոցը բակից բաժանող ցանկապատին մեխված մի փայտ։

Առանց երկար մտածելու, քարի մի քանի հարվածով նա փայտը ցանկապատից հանեց և, որպեսզի պապը չնկատի, թաքնվեց թփերի արանքում։

Սքանչելի փայտ էր. հենց դրանից էլ պետք է նա սարքեր այդ շատ կարևոր բանը։ Բայց նախ չբռնվելու համար, նա մի ապակու կտորով քերեց և հանեց ներկի շերտը, որից հետո միայն սկսեց իր փորձերը։



Փայտը խրեց հողի մեջ, հենց պատին, մտածեց ծայրին անիվ ամրացնել, նիզակ պատրաստել... նույնիսկ մտածեց ինքնաթիռ սարքելու մասին, բայց ոչ մի արդյունք․ իր ուզածը չէր ստացվում։ Նա դեռ երկար ժամանակ այդպես նստած կմնար, մտքերի մեջ խորասուզված, եթե չլսեր պապի ձայնը․

— Քշ՜, քշ՜, քշա՜, բոստանը տակն ու վրա են արել... Վանի՛կ, Վանի՛կ...

Վանիկը ցատկեց տեղից՝ և հենց առաջին հայացքից ամեն ինչ պարզվեց նրա համար։ Ցանկապատի բացվածքից՝ (իսկ թե այդ բացվածքը ինչից էր առաջացել, Վանիկը շատ լավ գիտեր)՝ հավերը ներս էին մտել բանջարանոց և ամեն ինչ փչացրել, տակն ու վրա էին արել։

Երբ արդեն հավերը դուրս էին արվել բանջարանոցից՝ պապը նրկատեց բացվածքը։

— Ա՛յ քեզ բան... սա հենց սկզբից այսպե՞ս էր, թե... նոր են քանդել։ Վանիկ ջան, մի հարմար փայտի կտոր գտիր ու մեխիր այստեղ։

Երբ պապը գլուխը տարուբերելով հեռացավ, Վանիկը վազեց դեպի թփերը, հանեց թաքցրած փայտը և նորից մեխեց իր տեղը։ Հետո նկուղից գտավ թիթեղյա այն ամանը, ո՛րի մեջ մի քանի օր առաջ պատրաստել էին ցանկապատերի ներկը, հեռացրեց չորացած հաստ շերտը և իր մեխած փայտը ներկեց։

Երբ գործն արդեն վերջացել էր, նա ուրախ ու գոհ նայեց իր արածին։

Ի վերջո նրան հաջողվել էր այդ արտակարգ կարևոր գործը։

# ՀԱՅՐՆ ՈՒ ԵՐԵՔ ՈՐԴԻՆԵՐԸ

Մի գյուղացի երեք տղա ուներ։ Մեծ տղան խոնարհ էր ու հանգիստ բնավորություն ուներ։ Եվ ընտանիքում բոլորը նրան միամիտ էին համարում։

Գյուղացին մի անգամ ասաց իր տղաներին։

— Ես արդեն ծերացել եմ, ժամանակն է, որ ձեզնից մեկին ժառանգորդ նշանակեմ։ Դուք բոլորդ էլ թանկ եք ինձ համար, ես չեմ ուզում զրկել ոչ ոքի։ Գնացեք օտար երկրում բախտ որոնելու։ Ես փող կտամ ձեզանից ամեն մեկին և, ով երեք տարի հետո իմ մառանը կլցնի ամենալավ ապրանքով, նա կլինի իմ ժառանգորդը։

Ծերունին փող տվեց իր որդիներին ու ճամփու դրեց։

Փոքր եղբայրները խնդմնդում էին մեծի վրա...

— Ի՞նչ է տուն բերելու մեր հիմարը

Նրանք բաժանվեցին իրարից առաջին քառուղում ու գնացին տարբեր ճամփաներով։ Կրտսեր եղբայրները գնացին մեծ քաղաքներ, իսկ ավագը՝ ուր որ աչքը կտրեց։

Գնաց, գնաց ու մի խորունկ գետ տեսավ, ծրի վրա կամուրջ չկար։ Գետը վարարել էր, կամուրջը տարել։

Այն ժամանակ մեծ եղբայրը մտածեց.

«Ես պիտի կամուրջը նորից սարքեմ, որպեսզի գետի այն կողմում գտնվող հողը իզուր չկորչի։ Թող մարդիկ օգուտ ստանան»։

Նա սկսեց կամուրջը պատրաստել և այդպես աշխատեց երեք տարի անընդհատ։ Նա ծախսեց հոր տված ամբողջ փողը։ Նրան միայն մի բան էր մնում՝ դատարկաձեռն տուն վերադառնալ։ «Այ թե, ինձ վրա կծիծաղեն եղբայրներս, հա՜»— մտածեց նա։ Բայց ի՞նչ պիտի աներ։ Վերջին անգամ պառկեց ու քնեց գետափին։ Երազում նա մի սպիտակամորուք ծերունի տեսավ։

— Դու լավ ես ծառայել մարդկանց,—



Նկ. Գր. Խանջյանի

ասաց ծերունին,—բայց մոռացել ես քո մասին։ Սակայն քո աշխատանքը չի մ՛նա առանց վարձատրության։ Ահա քեզ մի փոքրիկ կարթ։ Վաղը կկանգնես կամրջի մեջտեղում և երեք անգամ կարթը կիջեցնես գետի մեջ։ Առաջին անգամ կբռնես մի քսակ։ Հասարակ չէ այդ քսակը. հենց որ թափ տաս՝ միջից ոսկի կթափվի։ Երկրորդ անգամ կբռնես մի հրաշալի, փոքրիկ կուժ։ Հենց որ կուժը թեքես՝ միջից անընդհատ գինի կթափվի։ Երրորդ անգամ կբռնես մի ցախավել։ Տեսքով հասարակ է, բայց մի հրաշալի հատկություն ունի։ Այդ ցախավելը պատրաստված է լուսնի վրա բուսնող ծառի ճյուղերից։ Ծերունիները երիտասարդանում են այդ ցախավելի հարվածից։ Միայն չմոռանաս, որ պետք է հարվածես երկու-երեք անգամ, ոչ ավելի։

Առավոտյան ավագ եղբայրն արթնացավ ու մտածեց.

— Այդ ի՜նչ տարօրինակ երազ էր։ Ինչպիսի երազներ ասես՝ չեն լինում։

Նայում է, և ինչ՝ կողքին, իսկապես, մի փոքրիկ կարթ կա։ Այն ժամանակ ավագ եղբայրը հասկացավ, որ դա կանխագուշակ երազ էր։ Կանգնեց կամրջի մեջտեղում և կարթը իջեցրեց գետի մեջ։ Ինչ-որ մի բան երևաց ջրի մեջ, կարթը ցնցվեց և նա դուրս բերեց մի քսակ։ Բաց արավ քսակը, ցնցեց, զրնգալով ոսկյա դրամներ թափվեցին կամրջի տախտակների վրա։ Նա երկրորդ անգամ իր կարթը իջեցրեց գետի մեջ ու բռնեց մի փոքրիկ կուժ՝ մեջը հրաշալի գինի։ Այդքան համեղ գինի նա երբեք չէր խմել։

Նա երրորդ անգամ դեռ չէր իջեցրել իր կարթը, երբ տեսավ, որ ջրի երեսին մի ցախավել է լողում արդեն։ Երեք գանձերը փաթաթեց մի շորի մեջ, կապոցը հագցրեց իր ձեռնափայտի ծայրին ու գնաց տուն։

Գնաց, գնաց, մեկ էլ տեսավ, որ ճամփով գնում են իր եղբայրները, և ամեն մեկը երեք սայլ կարողություն է տանում իր հետ։ Կրտսեր եղբայրներն սկսեցին ծաղրել նրան.

— Նայեցեք, մեր հիմարը մի փոքրիկ կապոց է տանում։ Այդպես էլ մենք գիտեինք։ Երեք տարվա ընթացքում ոչինչ չի վաստակել։ Միայն հայրական դրամն է ծախսել իզուր։

Ավագ եղբայրը ոչինչ չասաց, քթի տակ ժպտում էր միայն։ Այդպես էլ գնացին մինչև տուն։





Ծերունին ուրախ դիմավորեց իր որդիներին։ Նա արդեն մեկական մառան էր պատրաստել ամեն մի որդու համար։ Բոլոր ազգականներն ու համագյուղացիները հավաքվել էին՝ տեսնելու համար, թե ծերունու տղաները ինչո՞վ են լցրել մառանները։

Բաց արին առաջին՝ մառանի դուռը, տեսան մառանը մինչև առաստաղը լի է ընտիր բրնձով։

— Լավ է, զավակս,— ասաց ծեր հայրը։— Բրինձը գյուղացու համար ամենակարևոր բանն է։

Բաց արին երկրորդ մառանի դուռը, տեսան մառանը լեփ-լեցուն է մետաքսի կտորով։

— Կեցցես, — ասաց հայրը,— մեծ հարստություն ես վաստակել։

Իսկ երրորդ մառանը չուզեց նույնիսկ գնալ. շուռ եկավ ու գնաց դեպի տուն։



— Այդ ինչ ես անում, հայրիկ, — բացագանչեց ավագ որդին,— իմ մառանը տեսնե՞լ անգամ չես ցանկանում։

— Իսկ ինչ տեսնեմ, —պատասխանեց հայրը։— Միայն խայտառակվելու ենք հյուրերի առջև։ Չէ՞ որ դու միայն մի կապոցով ես եկել։

— Մի վիրավորիր ինձ,— ասաց մեծ տղան։— Ես էլ քո տղան եմ, բաց արա մառանը։

Ի՞նչ աներ հայրը. նա դժկամությամբ բացեց երրորդ մառանի դուռը։ Դուռը բացեց թե չէ, ոսկիները թափվեցին շեմին։ Բոլորը նույնիսկ աչքները կկոցեցին, այնքան պայծառ էին փայլում ոսկի դրամները։

Կանգնել են հյուրերը, և զարմանքից ոչ ոք խոսք չի կարողանում ասել։ Այդ ժամանակ ավագ որդին ասաց նրանց.

— Բոլորդ վերցրեցեք մի-մի բուռ ոսկի, խնդրում եմ ձեզ, մի քաշվեք... Հետո էլ եկեք մեզ մոտ քեֆ անելու։

Հյուրերն սկսեցին քեֆ անել։ Մեծ տղան կժի հրաշալի գինուց բոլորի բաժակները լցրեց և սկսվեց ուրախությունը։

— Այս ամենը շատ լավ է։ Մի բան եմ ափսոսում,—զանգատվեց հայրը։ – Ես շատ եմ ծերացել, թե չէ ուրախությունից պար կգայի։

— Դրա համար էլ ես դեղ՝ ունեմ,—ասաց ավագ որդին և ցախավելով մեկ-երկու անգամ հարվածեց իր հոր մեջքին։

— Այդ ի՞նչ ես անում, անպատկառ որդի,—զարմացան հյուրերը։ Բայց հանկարծ տեսան, որ ծերունի հայրը դարձավ սևահեր



ու առույգ մի տղամարդ, Նրան երեսուն տարեկանից ավելի ոչ ոք չէր տա։ Նա տեղից ելավ ու սկսեց պարել։ Այդ որ տեսան, բոլոր ծերունիներն ու պառավներն էլ խնդրեցին, որ իրենց ձաղկեն ցախավելով։ Ջահելացավ նույնիսկ զառամյալ տատիկը, բարձրաձայն շնորհակալություն հայտնեց, իսկ ինքն իրեն փնթփնթաց.

— Թուրս խնայեց իր ցախավելը. կարող էր ինձ ավելի ջահելացնել, այնպես, որ քսան կամ տասնյոթ տարեկանի տեսք առնեի։

Բոլորն սկսել էին պարել, միայն տատիկը չէր ուզում։



Նա մնացել էր մենակ, հետո չգիտես, թե ուր գնաց։ Վերջապես հիշեցին նրա մասին, սկսեցին որոնել, տեսան, որ ցախավելից միայն կոտրտված ճիպոտներ են մնացել, իսկ կողքին ընկած էր տատիկի դատարկ խալաթը։ Եվ միայն նրա մի թեքի մեջ մի ինչ-որ ծծկեր երեխա էր թփրտում ու լալիս։

Ի՞նչ անեին։ Թոռները պետք է պահեին ու օրորեին իրենց սեփական տատիկին։ Այդպես էլ կորավ ցախավելը։ Ահա թե ինչու ծերունիներն այժմ այլևս չեն երիտասարդանում։

Թարգմ. Գր. Արեյան








— Այդ են քո ընկերները, հա՞,— քարկացած տոնով ասաց Արամի մայրը, դույլերը ձեռքին մտնելով սենյակ։

Արամը զարմացած նրան նայեց։ Մոր շորերը ջրունոտ էին, իսկ դույլերից մեկը դատարկ էր և ծռմռված, այլանդակված։

— Ի՞նչ է պատահել, մայրիկ,— դարձավ Արամը մորը,— հո վայր չե՞ս ընկել։

— Ընկել եմ, ընկել։ Եվ բոլորը քո ընկերոջ՝ Աշոտի շնորհքն է։ Սրանից հետո չհամարձակվես նրա հետ ընկերություն անել։

Արամը աղոտ կերպով պատկերացրեց կատարվածը։ «Երևի հրել է, կամ ձնագնդով խփել»,— մտածեց նա և առանց խոսք ասելու, պատից պոկելով վերարկուն ու գլխարկը, անհետացավ դռան մեջ։

Նա արագ-արագ քայլում էր փողոցով և ինքնիրեն մտածում. «Դեռ սպասիր, Աշոտ, ես քեզ ցույց կտամ, թե ինչ է նշանակում մորս նեղացնել»։

Այդ միջոցին հարևան շենքի շքամուտքից դուրս վազեց մի փոքրիկ տղա։ Նա սահնակը հետևից քարշ տալով շտապում էր դեպի մոտիկ բլրակը. այստեղից հնչում էին խաղացող երեխաների ուրախ ճիչերը։ Նա նկատեց Արամին և կանգնեց.

— Արա՛մ, Արա՛մ, գիտե՞ս ինչ է եղել։ Այդ Աշոտը շատ վատն է, գիտե՞ս։ Քիչ առաջ, երբ քո մայրիկը ջուր էր բերում, Աշոտը ձնագնդով խփեց նրան, իսկ մայրիկդ սայթաքեց ու ընկավ...

Արամը այլևս չլսեց շարունակությունը. նրա համար ամեն ինչ պարզ էր։ Աշոտից վրեժ լուծելու պատրաստակամությամբ նա շտապեց դեպի սահարանը։ «Հիմա երևի խաղում է ու ձնագնդով սրան-նրան խփում,— մտածում էր Արամը,— ես քեզ հիմա խփել ցույց կտամ»։

Այդ պահին նրա աչքով ընկավ մի կին, որը փոքրիկ երեխայի ձեռքից բռնած անցնում էր փողոցը։ Կինը Արամին ծանոթ երևաց։ «Ա,— դուրս թռավ նրա բերանից,— Աշոտի մեծ քույրն է։ Այս լավ եղավ, որ հանդիպեցի։ Ապա մի ես սրան ձնագնդով խփեմ, տեսնենք Աշոտի դուրը կգա՞»։

Եվ նա արագ կռացավ, երկու ձեռքով վերցրեց ձյունը, սեղմեց, պնդացրեց ու ձնագունդը թռավ...

Լսվեց մանկական մի սուր ճիչ։ Ձնագունդը կպել էր երեխային։ Աշոտը մի րոպե իրեն կորցրեց, չգիտեր ինչ աներ, բայց հետո ուշքի եկավ ու իրեն նետեց մոտիկ ցանկապատի հետևը։ «Հիմա՞ր,— հնչեց նրա գլխում,— այսքան մոտիկ տեղից չկարողացար մորը խփել, երեխան ինչո՞վ էր մեղավոր»։

Աշոտի քույրը գրկեց երեխային, շտապ անցավ փողոցը և անհետացավ խաչմերուկի մյուս կողմում։ Իսկ Արամի ականջին դեռ երկար հնչում էր երեխայի լացի ձայնը։ Նա զգաց իր մեղքը և դրանից կարծես ավելի կատաղեց։ «Պետք է Աշոտից վրեժ լուծել, իսկ ես այստեղ հիմարություններ եմ անում»,— մտածեց նա և դուրս գալով թաքստոցից, շտապեց դեպի սահարան։

Այստեղ ժխոր էր տիրում։ Բազմաթիվ երեխաներ՝ ո՛րը սահնակով, ո՛րը դահուկներով, ո՛րն էլ չմուշկներով, միմյանց հրմշտելով բարձրանում էին բլրակի վրա, նետի պես ցած էին սլանում, թավալվում, վեր կենում ու նորից էին վազում դեպի բլրակը։

Արամն սկսեց նրանց մեջ փնտրել Աշոտին։

Հանկարծ մեկը բռնեց նրա թևը և նա հետևից լսեց Աշոտի ձայնը։

— Արա՛մ, այսօր ես շատ վատ բան եմ արել։ Դե, գիտես...պատահում է է՛լի... ձնագնդով նշան ես բռնում սյունին ու հանկարծ վրիպում ես... Այդպես էլ այսօր էր...չիմացա, թե ինչպես ձնագունդը դիպավ քո մոր... Բայց գիտես... ես մեղավոր չեմ, հանկարծ եղավ։ Ես կգամ ձեր...

Աշոտը ապշած նրան էր նայում։ Անսպասելի եկած, նա չգիտեր ինչ աներ։ Եկել էր վրեժ լուծելու, իսկ այժմ... նա նույնիսկ խղճաց Արամին, երբ նայեց նրա տխուր ու կարմրած աչքերին։

Մի ծանր բան կարծես ընկավ Արամի կրծքից, նա թեթև շունչ քաշեց, նայեց ընկերոջ դեմքին և շուռ գալով վազեց դեպի տուն։

ՍԵՅՐԱՆ ՄՈՍԻՆՅԱՆ

Ալավերդու Սպանդարյանի անվան
դպրոցի աշակերտ

# ՀԱՍԿԵՐ

## Մարիամ տատիկի տոպրակից

(«Հասկերի» էջերից)

Փոքրիկ Պետրոսի ծննդյան օրն էր։ Մայրիկը ներս մտավ՝ ձեռքին նամակ, դիմեց Պետրոսին։

— Սիրելիս, մորաքույրդ շնորհավորական նամակ է ուղարկել քեզ, ահա կարդում եմ, լսիր։

«Ցանկանում եմ քեզ, իմ անգին Պետրոս, որ մայրիկը միշտ գոհ լինի քեզանից, որ խելոք լինես, հնազանդ և երբեք մայրիկիդ սիրտը չկոտրես...»։

— Մորաքույրս երևի սխալվել է, բացագանչեց Պետրոսը,— նա երևի կարծել է, թե մայրիկի ծննդյան օրն է։

* *
*

Աշակերտները իրենց միջի ծույլ ընկերոջը շարունակ նախատում էին։

— Չե՞ս ամաչում, երեք տարի առաջին դասարանն ես նստել ու չես փոխվում։

— Ինչո՞ւ եմ ամաչում,— պատասխանում է ծույլը,— ապա մեր վարժապետը ի՞նչ պիտի անի, որ քանի տարի է առաջին դասարանումն է։

* *
*

Արամը ուսումնարանում կռվել էր ընկերների հետ և վայր ընկնելով ճակատը խփել սեղանի անկյունին, որից ուռուցք էր առաջացել։ Տուն եկավ թե չէ, հայրը իսկույն նկատեց։ «Այդ ի՞նչ է, Արամ, ճակատդ. երևի էլի կռվել ես, բայց չէ՞ որ ես քեզ արգելել եմ կռվել»։

— Չէ, հայրիկ, չեմ կռվել. հաց էի ուտում, սխալմամբ ճակատս կրծեցի։

— Ի՞նչ ես ասում, Արամ, ինչպես կարող էիր ճակատդ կծել. չէ՞ որ ճակատդ բերանիցդ շատ բարձր է։

— Ես աթոռի վրա կանգնեցի, որ հասնեմ,— առանց կարմրելու պատասխանեց Արամը։

* *
*

Երեք տարեկան Քրիստինեի ձախ ձեռքի մատը, ինչպես էր պատահել, վերք էր ստացել։ Երեխան ցավից անընդհատ տնքում էր. պետք էր փոխել սպեղանին, և մայրը անուշ խոսքերով աշխատում էր համոզել երեխային, որ թույլ տա։ Քրիստինեն չէր լսում, բայց մոր երկար թախանձանքից հետո, մեկնեց նրան մյուս ձեռքի առողջ մատն՝ ասելով, սրա վրա դիր ճարը, մայրիկ, սա չի ցավում։

* *
*

Վարժուհին դասի ժամանակ բացատրում էր երեխաներին, թե ինչ է բնությունը՝ «Այն, ինչ որ շրջապատում է մեզ, այսինքն՝ երկինքը, հողը, ջուրը, միասին կոչվում են բնություն»,— ասում է վարժուհին։— Հասկացա՞ք, երեխաներ,— հարցնում է վարժուհին։

— Այո, հասկացանք,— պատասխանում են երեխաները։

— Ապա ասացեք, թե ի՞նչ են կազմում հողն ու ջուրը միասին,— կրկին հարցնում է վարժուհին։

— Ցեխ, ցեխ,— միաբերան բղավում են երեխաները։

# Լճաշենի ՍԱՅԼԵՐԸ

Հ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

*(Պատմական գիտությունների թեկնածու)*

*Լճաշենի մոտ արտակարգ աշխուժություն էր տիրում: Գյուղից ցած հավաքված մարդկանց խմբերը լարված հետևում էին հնագիտական արշավախմբի պեղող բանվորների աշխատանքին:*

*Այստեղ բացվել է դամբարաններ, քառանկյունի սենյակներ ու լայն փողոցներ ունեցող մի մեծ բնակավայր: Այստեղ է գտնվում նաև ուրարտական թագավոր Արգիշտիի վաղուց հայտնի սեպագիր արձանագրությունը:*

*Երեք հազար տարի առաջ այս վայրերում աշխույժ կյանք է եղել: Տեղացի ցեղերն զբաղվել են անասնապահությամբ, երկրագործությամբ, որսորդությամբ և ձկնորսությամբ:*



*Բայց մարդիկ երկար և խաղաղ ապրել չեն կարողացել: Սևանա լիճը բարձրացել է և ծածկել լճի ափերին մոտ ապրող մարդկանց բնակավայրերը, անխորտակ ամրոցներն ու քաղաքները, իսկ նրանց բնակիչները տեղափոխվել են ավելի ապահով վայրեր: Լճաշենում շատ իրեր են հայտնաբերվել: Հատկապես մեծ հետաքրքրություն են ներկայացնում չորս մեծ և մեկ փոքր սայլերը:*

*Ահա առաջին սայլը: Դա ունի մոտ չորս մետր երկարություն և ամբողջական փայտից պատրաստած չորս անիվ: Անիվներից և ոչ մեկը ճաղեր չունի: Սրանց ժողովուրդը «քոռ սայլ» է ասում:*

*Սայլերի բոլոր մասերը պատրաստված են Սևանա լճի շրջակայքի անտառներում աճած կաղնու, սոճու, թեղու և լորենու փայտից: Մասերն իրար են միացվել առանց մետաղե մեխեր օգտագործելու, ձողերի և փայտե շվերի միջոցով, սակայն սայլերի պատրաստման ժամանակ օգտագործվել են մետաղե (հավանաբար բրոնզե) ծակելու, տաշելու, կտրելու գործիքներ: Գործիքներից մի քանիսը գտնված են: Առնիները քառակող են և եղել են անշարժ: Ոչ թե առնին է պտտվել անիվի հետ, ինչպես ժամանակակից «քոռ» սայլերը, այլ անիվն է պտտվել:*



*Իրենց կառուցման վարպետությամբ և ինքնատիպ տեսքով ուշագրավ են սայլերի լծակները: Սրանց վերին մասերը զարդարված են բրոնզե ուռուցիկ գլուխներ ունեցող մեխերով, մի քանի տեղ փաթաթված են բրոնզե լայն ժապավեններով: Սամիների համար չունեն անցքեր, հավանաբար ամրացվել են եզների պարանոցներին՝ լծին կապված հաստ թոկերի միջոցով:*

*Լճաշենի չորս անիվ ունեցող երկու սայլերի լծերը զարդարված են միանման ձևով: Նրանցից ամեն մեկի մոտ դրված էին երկուական եզների մեծ զանգեր, այսինքն՝ երկու լծի մոտ՝ չորս եզան զանգ:*



*Լճաշենում գտնված բոլոր սայլերը միատեսակ չէին: Սայլերից երկուսն ունեին երկուական անիվ: Բայց սրանց մոտ եզների զանգեր չկային: Ամենափոքրը՝ մանկական սայլը, ուներ երեք անիվ: Վերջինս հիշեցնում է մանկական «ճռիկ» կոչվող եռանվանի խաղալիքը: Մանկական սայլի վրա դրված էր բրոնզե մի մեծ կարաս, մեջը՝ երկու մեծ կպցին և մի քանի իրեր. բոլորն էլ բրոնզից պատրաստված:*



Իր կառուցվածքով ամենից ուշագրավը չորս անիվ ունեցող երկրորդ սայլն է: Սա այնպիսի մի առավելություն ունի, որը չունեն հին սայլերից և ոչ մեկը: Այս սայլն իր վրա կրում



է ավելի քան 50 ճկուն փայտերից պատրաստած կամարաձև գեղեցիկ ծածկ: Սայլի վրայից մինչև կամարի առաստաղը ավելի քան երկու մետր բարձրություն ունի: Կամարի փայտերից յուրաքանչյուրի վրա խնամքով արված է մոտավորապես 40 անցք, որոնց միջով անցել են տափակացրած հատուկ փայտեր և հաստատուն ամրություն ու գեղեցկություն տվել կամարին: Հավանաբար կամարը դրսից ունեցել է հատուկ գործված կտորե ծածկոց: Այդպիսի ծածկած սայլ և, այն էլ 3100 տարի հնությամբ, ոչ մի տեղ գտնված չի:

Է՛լ ավելի ուշագրավ են դյուրաշարժ, երկանիվ մյուս երկու սայլերը: Սրանց երկարությունը լծի մոտից մինչև կողերը 2,8 մետրի է հասնում: Սրանք թեթև են և հեշտությամբ կարող էին փոխարինել ռազմակառքերին: Երկանիվ սայլերի վրա կարող էին կանգնել չորս զինվոր և սրընթաց գրոհել հակառակորդի վրա՝ նրանց լծված ձիերի, կամ մի այլ քաշող ուժի օգնությամբ:

Ինչպես երևում է, հնում էլ չեն մոռացել մանուկներին: Այդ հաստատվում է մանկական եռանիվ սայլի գոյությամբ, որի մոտ գտնվել են մի փոքրիկ երեխայի և մի կնոջ, հավանաբար նրա մոր կմախքները,



Լճաշենի մոտ գտնված սայլերը գիտության համար շատ արժեքավոր են: Դրանք ստեղծել են տեղացի բնիկները: Լճաշենից գտնված սայլերը պատկանել են հարուստ մարդկանց և աչքի ընկնող ցեղապետներին: Դրանք եղել են նրանց անձնական սեփականությունն ու թաղվել նրանց հետ:

Սայլերի մոտ գտնված բրոնզե իրերը, ոսկե մեծ թվով արտակարգ զարդարանքը և էլի շատ իրեր տեղական ծագում ունեն:



## ԿԱՐԴԱ այս գիրքը




### «ԱՆԲԱԽՏ» ՎԱՉԻԿԸ ԵՎ «ԲԱԽՏՆ ՈՒ ԱՇԽԱՏԱՆՔԸ»

— Արամն ի՛նչ բախտավորն է, ամեն անգամ քննությունների ժամանակ նրան հեշտ հարցատոմսեր են ընկնում. իսկ ինձ, հակառակի պես, այն օրն են դաս հարցնում, երբ ես դասս պատրաստած չեմ լինում. Բախտ է է՛լի...

Նման խոսքեր հաճախ է կրկնում չորրորդ դասարանի աշակերտ Վաչիկը: Դասարանում որևէ մեկի հետ պատահած հաջող կամ անհաջող բան նա միշտ կապում է բախտի հետ:

Բայց թե ի՞նչ բան է բախտը, Վաչիկը բոլորովին չի հասկանում:

Նա դպրոցից տուն գալուն պես պայուսակը պատուհանից ներս է շպրտում ու վազում բակ: Հաճախ այնտեղ ոչ մի խաղընկեր չի գտնում, բայց ի՞նչ փույթ, նա կարող է և մենակ խաղալ:

Եվ միշտ այսպես խաղով տար-

ված, մոռացած թվաբանություն ու լեզու, աշխարհագրություն ու պատմություն, արևամուտին մոր երկար բախտանձանքներից հետո, հոգնած ու ջարդված գալիս է տուն ու նույնիսկ առանց ընթրելու քնում: Իսկ դպրոցում, դասերի ժամանակ նա մտածում է. «Բախտ որ ունենամ, այսօր ինձ դաս չեն հարցնի»: Բայց արի տես, որ Վաչիկը դասարանի «ամենաանբախտն» է, և հակառակի պես նրան հաճախ են դաս հարցնում:

Դասամիջոցին, երբ Վաչիկը սովորականի պես զանգատվում էր իր անիծյալ բախտից, Վազգենը մոտեցավ նրան:

— Վաչիկ, ուզո՞ւմ ես քեզ մի լավ հեքիաթ պատմեմ:

Վաչիկը հեքիաթ շատ էր սիրում. նա անմիջապես համաձայնվեց և Վազգենն սկսեց.

«Լինում է, չի լինում, Մելո անունով, Վաչիկ ջան, քեզ նման մի անբախտ մարդ է լինում: Տասնհինգ տարեկան հասակից նա թափառական կյանք է վարում:

Մի օր այս աղայի մոտ բանվոր է լինում, մյուս օրը մյուս հարուստի մոտ՝ նախրապան:

Վազգենն հանկարծ լռեց:

— Ի՞նչ շարունակիր,— ստիպեց Վաչիկը.

— Գիտե՞ս ինչ, Վաչիկ, ավելի լավ է ես վաղը գիրքը կբերեմ, դու կարդա հեքիաթը:

Հաջորդ օրը Վազգենը Վաչիկին տվեց Արիս Շաքլյանի «Բախտն ու աշխատանքը» հեքիաթների գիրքը: Առաջ նա, իհարկե, կարդաց «Բախտն ու աշխատանքը» հեքիաթը և հասկացավ, որ ինքը երկուսներ է ստանում ո՛չ թե «անբախտ» լինելու պատճառով, այլ՝ ծուլության: Հիմա նա ընկրսել է աշխատել և բարձր գնահատական է ստանում:

Արիս Շաքլյանի հեքիաթների գրքում ուրիշ շատ հետաքրքիր հեքիաթներ էլ կան, Երեխաներ, դուք էլ կարդացեք այդ գիրքը և, եթե ձեր դասարանում էլ Վաչիկի նման աշակերտներ կան, խորհուրդ տվեք, որ նրանք էլ կարդան:

Կ. ՔԱՅԱԽՅԱՆ




# ԱՖՐԻԿՅԱՆ ԴԵՂԱՏՈՒՆԸ

Երբ ցավում է ձեր գլուխը, կամ ստադիոնում անձրևի տակ ընկնելով՝ հիվանդացել եք գրիպով, դուք անպայման կգնաք դեղատուն: Այնտեղ դո՛ւք ամեն տեսակի դեղորայք կճարեք՝ փոշի, կաթիլներ, հաբեր և այլն: Բայց չէ՞ որ ամենուր դեղատներ չկան: Դժվար թե որևէ մեկը հույս ունենա դեղատուն գտնել, ասենք, Արևմտյան Աֆրիկայի տափաստաններում:

Բայց պարզվում է, որ այստեղ էլ դեղատուն գոյություն ունի: Եթե չեք հավատում, շրջեք տափաստանով և դուք երևի շուտով ոչ այնքան բարձր, փոված ճյուղերով, կարճ ու ծուռումուռ բներ ունեցող ծառ կտեսնեք: Այդ ծառը «սարկոցեֆալյուս» է կոչվում:

Այդ ծառի խոշոր, համով ու հոտով մորի հիշեցնող, քաղցր



պտուղները, «Ակե ափի» և Արևմտյան Սուդանի բնիկների ամենասիրած միրգն են: Գնահատվում են նաև այդ ծառի կեղևից ձեռք բերվող, մաշկի համար օգտագործվող դեղին ներկը և նրա կարմըրա-շագանակագույն փայտը:

Բայց դրանք գլխավորը չեն:

Այդ ծառի կեղևից ստացվող դեղնավուն հյութը մալարիայի և արյան պակասության դեպքում օգտագործվում է որպես դեղ: Այդ հյութը օգնում է նաև ստամոքսի հիվանդության և սրտախառնուքի դեպքում: Նրա փայտի խաշուն օգնում է մարսողությանը և վերականգնում է մարդու ուժերը: Կեղևի խեժը օգնում է ատամնացավի ժամանակ: Սարկոցեֆալյուսի չորացած կեղևը և արմատները մանրում և ցանում են վերքի վրա և հակավարակիչ հատկություն ունեն: Արմատները և կեղևը հայտնի են «աֆրիկական քինին» անունով, որովհետև երկար ժամանակ օգտագործվում էին որպես քինինի փոխարինողներ:

Տերևներն էլ են պետք գալիս, նրանց հյութը օգտագործվում է դողերոցքի դեմ և թրջոցների համար: Լիբերիայի բնակիչները սարկոցեֆալյուսի տերևները պըղպեղով ծամելով բուժում են դիզենտերիան:

Այդ թանկագին ծառի բուժհատկությունները բացատրվում են նրա մեջ եղած հատուկ նյութի՝ ալկալոիդների առկայությամբ, որոնք հիվանդաբեր և փտամանրէները ոչնչացնելու հատկություն ունեն:

## ՕԳՆԵՑԵՔ ԳԱԳԻԿԻՆ

Գագիկը մի օր մտավ Մինաս պապի սենյակը և սկսեց թերթել նրա գրասեղանին դրված գրքերը: Նրանցից մեկում նա մի զարմանալի նկար տեսավ, որ կողմ շուռ տվեց, բան չհասկացավ: Ներս մտնելով սենյակ ու տեսնելով զարմացած Գագիկին, Մինաս պապն ասաց.

— Այստեղ շատ լավ բան է գրված, միայն պետք է կարողանալ գտնել կարդալու եղանակը: Դրա համար էլ, տես, մոտը բանալի կա նկարված:

Գագիկը մտածեց, մտածեց, ոչինչ չգտավ ու գնաց քնելու:

Ապա փորձեք օգնել նրան:



## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

*«Պիոներ» № 3*

*Հինգ քառակուսի.—*



*Երեք անապատ.— Կալահարի, Ատակամա, Սահարա:*

*Հանելուկներ— խլուրդ, ժանտաքիս, կկու:*

*Երեք ճանապարհ.—*



*Հետաքրքիր սխալ.— Ուսուցիչը տվել էր 8 թիվը:*



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


1. Թանկագին մայրիկ · · · 2
2. Լենինի ճամճամը
Ռ. ԱՐԱԼՅԱՆ · · · · · 4
3. Պահակի պատմածը
Է. ԱՎԱԳՅԱՆ · · · · · 8
4. Սարի գաղտնիքը—
Կ. ՍԻՄՈՆՅԱՆ · · · · 8
5. Մեր բակում—
Խ. ԴՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ · 13
6. Պեյզաժ—Ա. ՂԱԶԻՆՅԱՆ · 18
7. Գարուն—Գ. ԽԱՉԱՏՐՅԱՆ 18
8. Գարնանային
Վ. ԴՈՒՐՅԱՆ · · · · · · 18
9. Ձնծաղիկ—Մ. ՄԵՀՐԱԲՅԱՆ 19
10. Արտակարգ գործ
Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ · · · 20
11. Հայրն ու երեք որդիները
(հեքիաթ) · · · · · · · 22
12. Ո՞վ է մեղավոր—
Ս. ՄՈՍԻՆՅԱՆ · · · · 25
13. Մարիամ տատիկի տոպրակից 26
14. Ճնաեհնի հնագույն սայլե-
րը—Հ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ 27
15. Կարդա այս գիրքը—
Կ. ՔԱՅԱԽՅԱՆ · · · · 28
16. Այստեղից-այնտեղից · · · 29
17. Ժամանց · · · · · · · · · 31





„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Красноармейская № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց № 41, հեռախոսներ՝ 2—44 83, 2—59—06*

*Վֆ 01970, Պատվեր 163, Տիրաժ 3000: Տպագրական 4,5 մամուլ: Ստորագրված է տպագրության 3/IV 1957 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91:*

*Գինը 2 ռ.*

Շապիկի 1-ին և 4-րդ էջերը՝ նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

2-րդ և 3-րդ էջերը՝ նկ. Խ. ԵՍԱՅԱՆԻ



# ԳԱՐՈՒՆ

Եկավ գարունն ու բերեց
Կարմիր արև, ծիածան,
Ծիլ ու ծաղիկ հողի տակ,
Խոր քնից արթնացան:
Առվակները ջրով լի
Աղմկեցին ու փախան,
Մանուշակն է դուրս գալիս՝
Կապույտ գլուխը կախած:
Հորեղբայրս գնաց դաշտ,
Հայրիկն այգի շտապեց,
Վազը հանեց ցուրտ հողից,
Մաքրեց ճյուղերը, կապեց:
Մայրիկը տունն է մաքրում,
Տատիկը՝ բակ ու պարտեզ,
Իսկ ես ի՞նչ եմ անելու,
Հո պարապ չեմ նստի ես:
Գնամ բահս վերցնեմ
Ու մեր պարտեզը փորեմ,
Ցանեմ սիրուն ծաղիկներ,
Ողջ աշխարհը զարդարեմ:

ԱՂԱՍԻ ԹՈՒՐԱՋՅԱՆ